

Ապրիլի 22-ին լրացավ Վ. Ի. Լենինի ծննդյան 119-ամյակը

Նկարը՝ ԳԱՍՏԵԼԼՈ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ





# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

**«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.**

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 4. 89



*Հանձնված է արտադրության 31.01.89 թ.: Ստորագրված է տպագրության 05. 05. [illegible] օֆսեթ, $70 \times 100^{1}/_{16}$: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,292 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 61282: Պատվեր՝ 130: Գինը՝ 15 կոպեկ:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 31. 01. 89 г. Подписано к печати 05. 05. 89 г. Формат $70 \times 100^{1}/_{16}$. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 61282. Заказ 130. Цена 15. коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Շապիկի 1-ին էջին՝ ՀՈՎՀԱՆՆԵՍ ԱՅՎԱԶՈՎՍԿԻ «ՏԵՍԱՐԱՆ ԹԵՈԴՈՍԻԱՅԻՑ» 1845 Թ.



ՍԵՐՈ ԽԱՆԶԱԴՅԱՆ

# ԱՆԴՐԱՆԻԿ

(հատված վեպից)

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Գիշերվա կեսին Անդրանիկը կանչեց Եղիշե Քաջունուն: Նստած էր թախտին, ծնկները գրկած, գլուխը ծնկների վրա:

— Ճրագ արա, Եղիշե:

Քաջունին լամպ վառեց: Երբ շրջվեց դեպի Անդրանիկը, զարհուրեց: Մի գիշերում զորավարը դարձել էր զառամ: Իսկ ընդամենը հիսունչորս տարեկան էր:

— Գնացի՞ն: Բոլո՞րը գնացին:

— Վերջին զինվորը այս երեկոյան մեկնեց:

— Օղի բեր:

Օղին խմեց թափով, մի հանգում: Մտածեց՝ պետք է վեհափառին խնդրել, որ մարդ ուղարկի Լևոնի ու Աննայի շիրիմները օրհնելու: Բայց ո՞վ կհիշի տեղը, Եղիշե՞ն:

Քաջունին երկու ձեռքով փակել էր աչքերն ու հեկեկում էր: Անդրանիկը ցնցվեց՝ նորի՞ց հարազատ է մեռել: Աչքին ամեն ինչ մթնեց: Խցի պատերը լեզու առան:— Ամրացի՛ր, զորավար:— Մի՞թե Ծիածանն էր: Այո, այո, դա նրա ձայնն է՝ հուսադրող, նաև պահանջող:

Նորից օղի խմեց, նորից՝ մի թափով:— Այդպես էլ Լևոնը չիմացավ, թե ինչ գույն է պսակի հարսանեկան քողը: Աննան բարի հրեշտակ էր:

Գոռաց Քաջունու վրա:

— Լացդ կտրի՛ր: Մեր լացն սպառվել է: Մենք այլևս լաց չունենք:

Պառկեց մեջքի վրա, ձեռքերը դրեց գլխատակին: Քաջունին մոտեցավ լամպին, որ մարի:

— Մի հանգցրու,— ասաց Անդրանիկը:— Ես վախենում եմ խավարից:

Քաջունին շտապեց դուրս գալ: Առաջին անգամ զորավարի բերանից լսեց «վախենում եմ»: Ինքն էլ ինչ-որ ահ զգաց:

Դրսում խավար էր:

Անդրանիկն իրեն լիակատար մենակ էր զգում՝ երամից հետ ընկած կռունկ, որ նույնիսկ մոռացել է հեռավոր հորիզոնների ճանապարհը: Գուցե միակ սփոփանքն իր ձին էր, որ չտվեց ուրիշի՝ մյուս ձիերի պես: Պահեց: ինչո՞ւ պահեց:— Է՛, ձի իմ, հիշո՞ւմ ես:— Մի ժամանակ, երբ

երևում էր մարդկանց մեջ՝ իր ձիու վրա, ոչ միայն հմայք էր դառնում տեսնողների համար, այլև ներշնչանք: Աչքին անծանոթ, նաև ծանոթ ճանապարհներ էին երևում՝ ոլորվում օձաձև, մռնչում: Բայց ոչ, ինքն է ահա մռնչում խավարի միջից:— Ախր այդ ճանապարհով գնացողը հետ չի գալիս:— Մեղա՛, մեղա՛:— Ամեն ինչ, նույնիսկ նեղ պատուհանից երևացող լուսինը ցավեցնելու չափ օտար ու խորթ էին:

Խցիկի պատից կախված էր գեներալական զգեստը: Բաճկոնը շողում էր կուրացնող փայլով: Իր պարգևներն էին՝ բուլղարական երկու շքանշան, ռուսական Գեորգիևյան երեք խաչ, ֆրանսիական Պատվո լեգեոնի Ասպետի շքանշան, նաև՝ Վարդան Զորավար՝ Էջմիածնի պարգևը: Այս մեկը Հունաստանը տվեց՝ պատերազմական Պատվո խաչ: Կողքին Ռուսիան ընծայեց՝ Վլադիմիրի պատկերը, նաև Ստանիսլավսկու ոսկե ժապավենով զանգվածեղ շքանշան: Էլի՛, էլի՛ ոսկե, արծաթե, բրոնզե...

Բայց՝ բոլորն իրենց իմաստը կորցրած:

Ծեգում էր: Գարնան հախուռն արշավող լուսաբաց է: Ոչ հեռվում ճերմակին տվող հրաշքը՝ Մասիս լեռը կարմրատակեց արյունաթաթախ:— Է՜յ, վեհափառ լեռ, տեսքդ փոխիր, գոնե մի փոքր պայծառացիր: Հայ ցեղը կապրի: Պիտի ապրի... Լսո՞ւմ ես, հայոց փառքի ու կործանման վկա լեռ: Լույր արա ամենքին քո անհասանելի բարձունքից՝ իմ կռիվը չի ավարտվել: Ես դեռ կռվելիք ունեմ... Գնում եմ ոչ թե դեպի անհայտություն, ինչպես քո վիհերում կործանված հայոց գահերը, այլ դեպի նոր պայքար: Գնում եմ ժողովելու ազգիս ցիր ու ցան բեկորները՝ նորից զարկվելու մեր ցեղի թշնամիների հետ, մեր ցեղի գոյության համար...

Դուրս եկավ ֆիդայական զեն ու զարդի մեջ: Շտապ հավաքվեցին իր հետ մեկնող զորապետները:

Անդրանիկը նկատեց մեն-մենակ կանգնած Վարդան Շահպազին: Լրիվ ճերմակել էր, կարծես՝ ընդարմացել:

— Ի՞նչ կասես, պատվական եղբայր:

— Ի՞նչ պիտի ասեմ,— խոսեց հին ընկերը:— Հետդ պիտի գամ:

— Իմ ճանապարհը դառն է, գնալ կա, վերադարձ՝ հազիվ թե...

— Կարծես մինչև հիմա կարմիր գորգի վրա ես քայլել: Հետդ պիտի գամ:

— Համաձայն եմ,— ձեռքը թափ տվեց Անդրանիկը:

Էլ ո՞վ է հետը գալիս: Ի՞նչ ես հարցնում, ահա կողքիդ են Արամ Թութեյանը, Կովտունցի Արմենակը, Հայկարամ Գրալյանը, Քուրդ Հովհաննեսը, Համբարձումը, Գրիգոր Տերտերյանը, Ռուբեն Տեր-Ստեփանյանն իր տիկնոջ՝ Աղավնու հետ, Մինաս Չավուշը, Երվանդը...

— Էլ ո՞վ:

— Էլի ութ-ինը հոգի,— պատասխանեց Եղիշե Քաջունին:

— Գարա Նազա՞րը:

— Ոչ: Նա մնում է:

— Դո՞ւ:

— Ես ևս մնում եմ, զորավար,— պատասխանեց Եղիշե Քաջունին:

Համախումբ գնացին դեպի Գայանեի վանքը: Այնտեղ են թաղված իր զինվորներից շատերը: Գերեզմանաթմբերը թարմ էին՝ միմյանց կից, ուղիղ շարքով: Երկնային արցունքների նմանող աղավնիներ պտտվեցին եկեղեցու շուրջը, նաև զորապետների վրա:

— Այս Թագավորն է, այս Գևորգը, այս մեկն էլ Սարգիսը... Է՜, տղերք, մնացեք բարյավ:

Ձեռքերը պարզեց դեպի երկինք:

— Ապաքինություն տո՛ւր, տե՜ր, ազգիս հայոց:

Երկնքի կապույտից մանկան թաթիկներ կախվեցին: — Իմ գերեզմանն անտեր է, հայր:— Զարհուրեց: Բարուրում թաղած իր մանկիկն էր կանչողը: Առաջին անգամ լսեց որդու ձայնը: Խռնարհվեց շիրիմների առջև, զգաց հողի տնքոցը:

— Եթե հայ ժողովուրդը երբևիցե կուզի ինձ պատիվ անել իմ մահից ետքը, ապա ես իմ արձանս չեմ ուզեր, փառավոր թաղում չեմ ուզեր: Թող հայ ժողովուրդն իմ արձանիս փոխարեն կանգնեցնի ավերակ դարձած Մշո Առաքելոց վանքը և այնտեղ մի փոքրիկ ուսումնարան ստեղծի հայ մանուկների համար: Այս է իմ ամբողջ բաղձանքս և բարոյական պահանջս հայ ժողովրդից:

Իրեն թվում էր, թե ինքը հողի ու աշխարհի հետ խոսում է անձայն, ինքն իր մեջ, առանց բերան բացելու: Սակայն նրա ձայնը ղողանջում էր համատարած լռության մեջ, արձագանքում Գայանե տաճարի կամարների տակ: Կամեցավ երեսին խաչ հանել, սակայն ձեռքը թափ

տվեց:
Գնաց դեպի մեծ խճուղին: Հետը համախումբ քայլում էին իր մտերիմները՝ քսան հոգի: Խոցված, խեղդված հոգին թպրտում էր: Քայլերն ուղղեց դեպի Վաղարշապատի երկաթուղու կայարանը: 1919 թվականի ապրիլի քսանչորսն էր:
— Երվանդ, գնացքի տոմսերն ապահովվա՞ծ են:
— Այո, քեռի:
— Կհասնենք: Ժամանակ ունենք:
— Է, գործն կիսատ մնաց, լաո: Ծո՛ տղերք, գործն կիսատ մնաց:
Զգաց, որ ծերանում է ժամ առ ժամ:
Դեռ Վաղարշապատից դուրս չէին եկել, երբ Անդրանիկը մեխվեց տեղն ու ցավով գոչեց:
— Զի՛ս... Զիս մնաց անտեր:
Վազեց ետ: Փայտամած ծածկի տակ մեն-մենակ կանգնած էր իր ձին: Տիրոջը տեսնելով՝ խրխնջաց ուրախ: Անդրանիկը լսեց հեռավոր օրերի ռազմական փառքի զնգոցը: Լեռների կանաչ կարոտը տեսավ ձիու աչքերում: Ձին արձակեց, քաշեց դեպի մեծ ճանապարհը: Վաղարշապատը բուրում էր նոր թխած հացի ու հին գինու հմայքներով: Պատի տակ խռնված մի քանի որբեր ծուլորեն վեր կացան, ձեռքները պարզեցին:
— Հա՛ց...
Անդրանիկը պպզեց նրանց առջև, ձեռքը դրեց մի թուխ, խոշոր աչքերով տղայի ուսին:
— Քանի՞ տարեկան ես, մանչս:
— Տասնչորս:
— Է՞հե... Ո՞ր աշխարհից ես:
— Սասունից:
— Էհե՛... Իր ունեցած վերջին երեք ոսկին հանեց, խոթեց տղայի բուռը:— Դրանով հաց կառնես: Կառնես նաև ընկերներիդ համար: Լա՞վ:
— Հենց այդպես, հիհարկե,— պատասխանեց տղան:— Հաց կառնեմ այ այս Հրայրի, Աղբյուր Սերոբի, այս Գևորգ Չավուշի, Մանուկի, այս Ախոնի, Գալեի, այս Մխոյի, այս Միհրանի համար...
Զորավարը դողացող հուզմունքով նայեց տղասնակս:
— Հրա՞յր: Հրայրը դո՞ւ ես:
— Ես եմ, քեռի,— պատասխանեց մի շեկլիկ:— Այս մեկն էլ Արաբոն է:
— Արաբո՞,— գլուխը պտտվում էր:— Արաբո՞:
— Հա քեռի: Ես Արաբոն եմ:

Անդրանիկը համբուրեց բոլորին, որ կարծես հարություն առած իր նահատակ եղբայրներն են: Կանգնեց ճիգով, հառաչեց խոր: Ձին մռութով հրում էր նրա ուսը: Կենդանացնող է իր ձիու շունչը: Գըլխում անսպասելի միտք ծառացեց: Իր հետ խոսող տղային բարձրացրեց գետնից, դրեց ձիու թամբին, սանձերը տվեց ձեռքը:
— Պի՛նդ կաց: Պի՛նդ պահիր սանձը, լաո, մա՛նչս:
Տղան ամուր նստեց թամբին, ոտքերը պրկեց: Անդրանիկն իր սուրը փաթաթեց նրա մեջքին:
— Սուր բանեցնել գիտե՞ս:
— Կսովորեմ:
— Անդրանիկը համբուրեց սուրը, փոքրիկի ձեռքը, ձիու մռութը:
— Սասունը ո՞ր կողմին է, մանչս, ցույց տուր:
— Հրեն հա՛:— Տղան ձեռքը մեկնեց դեպի Արարատ լեռը:
— Կարո՞ղ ես սուրդ հանել, լաո՞:
— Հաբա իմա՞լ: Մեծ սուր է, բայց կհանեմ...
— Ապրի՛ս, մանչս,— կատարյալ հուզվեց Անդրանիկը:— Փոքր ազգին մեծ սուր է պետք: Այդ սուրն ու այդ ձին հիմա քոնն են: Քշիր, քշիր, դեպի Սասուն, Սասունը քոնն է: Ետ առ Սասունը, Վանը, Հայաստանը: Քշի՛ր, դե հա՛: Ժի՛ր, ժի՞ր: Տղա լաո՞, զա՛րկ...
Տղան թափահարեց ձիու սանձը: Ձին վրնջաց, կարծես հրաժեշտ տալով իր տիրոջը, և սլացավ Վաղարշապատի միակ լայն պողոտայով՝ դեպի Արարատի փեշերը... Անդրանիկը վազեց նրա հետևից:
— Է՛յ, մանչս, բայց ես չիմացա քո անունը: Էյ, մանչս, անունդ ի՞նչ է...
Ձիու վրայից տղան հետ նայեց:
— Անունս Անդրանիկ է, քեռի: Անդրանի՜կ...
Դատարկ երկինքն արձագանքեց զընգուն.
— Անդրանի՜կ...
Անդրանիկ Օզանյանը շրջվեց դեպի երկաթուղու կայարանը, գնաց շտապելով: Չուզեց, որ փոքրիկներր տեսնեն իր արցունքները: Օդի մեջ դեռևս զնգում էր տղայի ձայնը.
— Անդրանի՜կ...
Այս ղողանջը սփռվեց ողջ Հայոց աշխարհի վրա:
Մինչև օրս:
1977—1983

ՇԱՌԼ ԱԶՆԱՎՈՒՐ

# ՆՐԱՆՔ ԸՆԿԱՆ

Նրանք ընկան չիմանալով ինչու,
Տղամարդիկ, կանայք, երեխաներ, որոնք ապրել էին ուզում,
Ծանր շարժումներով ընկան, ինչպես հարբած մարդիկ,
Խեղանդամված մի գաղտնիքով, վախից աչքերը թաց...

Նրանք ընկան կանչելով աստված.
Իրենց եկեղեցու շեմին կամ դռան առջև իրենց տան,
Որպես հոտ անապատի, երերուն ամբոխով ընկան
Տապալված ծարավից, կրակից, քաղցից, երկաթից...

Ոչ ոք չբարձրացրեց ձայնը անհոգ այս աշխարհում
Այն ժամանակ, երբ կործանվում էր մի ժողովուրդ, իր իսկ արյան մեջ,
Եվրոպան հայտնագործում էր ջազն ու իր երաժշտությունը,
Շեփորի աղմուկը խեղդում էր երեխաների ճիչը...

Նրանք ընկան ամոթխածությամբ, առանց աղմուկի,
Հազարներով, միլիոններով ընկան, և անշարժ էր աշխարհը,
Դառնալով միայն մի ակնթարթ արնաշաղախ զանգված,
Որը ծածկում է քամին ավազով, հետո՝ մոռացությամբ...

Նրանք ընկան աչքերը լցված արևով,
Ինչպես մի թռչուն, որին սպանում է գնդակը թռիչքի պահին,
Որպեսզի մեռնեն անհայտ մի տեղ, առանց հետքեր թողնելու,
Չճանաչված, մոռացված, քնի մեջ իրենց վերջին...

Նրանք ընկան միամտորեն հավատալով,
Որ իրենց երեխաները կկարողանան շարունակել իրենց մանկությունը,
Որ մի օր նրանք կքայլեն հույսի այն հողերով,
Կապրեն ողջագուրող մարդկանց ազատ երկրներում...

Ես էլ եմ այդ ժողովրդից, որ քնում է առանց գերեզմանի,
Որն ընտրել է մահը, բայց չի ուրացել իր հավատը,
Որը երբեք չի ծռել գլուխը անարգանքի տակ,
Որն ապրում է չնայած ամեն ինչին և չի գանգատվում...

Նրանք ընկան, որպեսզի իրենց քաջության վերջում
Մտնեն ժամանակների հավիտենական գիշերվա մեջ.
Մահը նրանց խփեց առանց տարիք հարցնելու,
Նրանք մի մեղք ունեին՝ զավակներն էին Հայաստանի...

# « ՁԵԶՊԵՍՆԵՐԻՆ ՄԻՇՏ ԵՐԱՆԻ... »



ԱՐԱԲՈ (Առաքել

ՀԱՅԿԱԶ ՊՈՂՈՍՅԱՆ
պատմական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

1877—1878 թթ. ռուս-թուրքական պատերազմից հետո Արևմտյան Հայաստանում ավելի ու ավելի ուժեղացան ժողովրդի նկատմամբ հարստահարությունները: Այդ վիճակից ելնելով, հայրենասեր շատ երիտասարդներ սկսեցին զինվել, սարերը բարձրանալ, հայդուկային խմբեր կազմել և պայքարել թուրք և քուրդ վերնախավի և կառավարողների դեմ, ժողովրդին պաշտպանել պաշտոնյաներից: Հայդուկները գիտեին, որ թուրքական բռնակալության դեմ մղվող պայքարում իրենք մի օր պիտի ընկնեն, սակայն նրանք առանց երկնչելու շարունակում էին իրենց պայքարը, հպարտությամբ իրենց համարում ժողովրդի համար մատաղներ և իրենց տոպրակներում պահում սեփական պատանները: Հայդուկները ժողովրդի մեջ թողեցին լավ հիշատակներ և բարի անուն:

Արևմտյան Հայաստանի Մուշ-Սասունի առաջին հայդուկներից մեկն էր Սասունի Բռնաշեն գավառակի Կառթեր գյուղի ծընունդ Արաբոն: Նա իր մանկությունը անց էր կացրել Սասունի հրաշագեղ բնության գրկում, ապա ընդունվել և ավարտել էր Մշո Առաքելոց վանքի ժառանգավորաց դպրոցը: Հանդուգն այդ երիտասարդը Տերեվանք գյուղացի Մխո Շահենի (Սեֆերյան Մխիթար) հետ կազմեց հայ իրականության մեջ առաջին հայդուկային խմբերից մեկը: Անդրանիկ այդ խումբը ահաբեկում էր թուրք իշխանավորներին, կողոպտում նրանց քարավանները և ա-

վարը բաժանում էր չքավոր գյուղացիներին: Իր քաջագործությունների շնորհիվ շատ չանցած այդ անվանի հանդուգն հայդուկը դարձավ ժողովրդի ամենասիրած անձնավորություններից մեկը: Պատահական չէր, որ ժողովրդի մեջ բերնեբերան շրջում էր հետևյալ ասացվածքը. «Հոն, ուր Արաբոն կերևնա, թուրք ոստիկանները մկան ծակ կը փնտրեն»: Ապա նրա մասին ավել է, որ նա ոչ մի իշխանություն չի ճանաչում, պայքարի է ելել բռնության դեմ, մի օր սուրբ Աշբեմիկում է, մյուս օրը՝ Դավթի ձորերից վերև գտնվող ժայռերի մեջ: Արաբոն ժողովրդին քարոզել է ինքնապաշտպանության համար զինվել: Նա գտնում էր, որ անհրաժեշտ է զենքը գրավել թշնամուց և ուղղել նրա կրծքին:

Արաբոյի և նրա խմբի մասին ժողովրդի մեջ ստեղծվել էին շատ առասպելական պատմություններ, որոնք դուրս էին եկել Մշո դաշտի ու Սասունի սահմաններից և հասել Վան, Պարսկաստան, Էրզրում, Կովկաս և այլ վայրեր: Արաբոն հաճախ էր կրկնում, որ շատ ազնիվ գործ է աղքատ և խեղճ ժողովրդին պաշտպանելը:

Արաբոյի մասին ժողովրդի ստեղծած երգերից մեկում այսպիսի տողեր կան.

Մեկ խարցուցեք՝ գալող ո՞րն է,
Քաջ Արաբո բաղդավորն է,
Կարմիր իրիցանց զինվորն է,
Առաքելսի զարդով կիգա:
Արաբոյիս բաժն բողուն,
Բարուր գյուղեն ուր բնաղուն,
Կը թափե ձեր վախկոտ արուն,
Հայ անարատ կաթով կիգա:

Հայդուկային այս խումբը ժողովուրդը անվանեց ֆիդայական (պարսկերեն՝ քաջ, անձնազոհ): Առաջին այս խմբի մեջ էին նաև այնպիսի քաջ և անձնազոհ երիտասարդներ, ինչպիսիք էին ալիզոնանցի Լևոնը, Մղդենցի Գևորգը (Չաուշը), գյումբեցի Հովիկը, բերդակցի Ներսոն, սրանց հարում էր Մշո Վարդենի գյուղացի Մարգար (Ամիրյան) վարժապետը և Մշո Հակոբ Գալֆա սարկավագը: Ֆիդայական այս խումբը պաշտպանում էր հասարակ մարդկանց՝ անկախ նրանց ազգային պատկանելությունից: Բազմաթիվ վայրերում Արաբոն ուներ իր գործակիցները և նա որևէ վնաս չէր պատճառում աղքատ հայերին ու նույնիսկ քրդերին և հարուստներից գրաված ավարը բաժանում էր նրանց: Արաբոյի խումբը ահաբեկեց Մշո Վարդենիսի երեք տանուտերերին, որոնք զբաղվում էին մատնությամբ:

Ընկերներից մեկը Արաբոյի մասին գրել է. «Սուսամերկ կռիվներից մեկի մեջ դաշույնի մի հարված էր ստացել նա (Արաբոն), և այդ հարվածի հետքը երկար ու թեք գծով իջնում էր նրա գողտրիկ բերանի ձախ անկյունից դեպի ծնոտը... և նրա դեմքի կուսական գեղեցկությանը տալիս էր դյուցազնական կնիք»:

Մշո Առաքելոց վանքի վերևում իրար վրա էին կուտակված հսկայական քարեր, որոնք շատ հին ժամանակներից սկսած ստացել էին Դավթի քարեր անունը: Այդ քարերից դիրքով ավելի բարձր գտնվողները ժողովուրդը անվանեց Արաբոյի քարեր:

Հայտնի է, որ 1885 թվականին Վան քաղաքում սկսեց գործել հայ իրականության մեջ առաջին քաղաքական՝ Արմենականների կուսակցությունը: 1889 թ. Վանի արմենականները ուխտավորի անվան տակ Տարոն ուղարկեցին ապագա նկարիչ Փանոս Թերլեմեզյանին և նպատակ ունեին կապ ստեղծել Արաբոյի խմբի հետ: Նույն թվականին Փ. Թերլեմեզյանը մեկնում է Մուշ, որտեղ ծանոթանում է Վարդենիս գյուղի հայտնի վարժապետ Մարգարի հետ: Իր հուշերում նա այդ հանդիպման մասին գրում է, որ Մարգարը իրեն հիացրել է՝ որպես «պատրաստված, նվիրված և մեր ձեռնարկած գործին խիստ հարմար մարդ»: Այնուհետև ապագա նկարիչը նշում է, որ Մշո Առաքելոց վանքում նա ծանոթանում է Արաբոյի և Լևոնի հետ: Այս կապակցությամբ գրում է. «Արաբոն, որը տակավին որևէ կուսակցության չէր պատկանում, լավ կազմվածքով, բարձրահասակ և թխադեմ մի երիտասարդ էր...Խոշոր աշխատանք էր հարկավոր նրան ընտելացնելու և լայնորեն ըմբռնել տալու ազատագրական շարժման իմաստը, որին նա բնազդորեն միայն հարած էր: Լևոնը մի փոքրիկ մարդ էր, ոչ գեղադեմ, բայց զարգացած, գիտակից և նվիրված իր գործին: Երկու ժամվա չափ իրար հետ խոսելուց հետո որոշվեց, որ նրանք կապ պիտի ունենան Մշո Ստեփանի հետ: Ես վեր կացա արձակեցի իմ կամար (դաշույնը) ու կապեցի Արաբոյի մեջքին՝ իբրև նվեր և համբուրելով նրանց հեռացա»:

Թուրքական իշխանությունները շատ ջանքեր գործադրելուց հետո Բերդակ գյուղում կարողացան ձերբակալել Արա-

բոյին, սակայն շատ չանցած նրան հաջողվեց փախչել բանտից և գնալ Կովկաս, որտեղ 1893 թ. կազմեց 17 հոգուց բաղկացած մի խումբ և անցավ սահմանը, նպատակ ունենալով հասնել Սասուն: Խմբի անդամների մի մասը ապաստանում էր Խոշգյալդի գյուղի մի մարագում: Տանտերը խնդրում է նրանց թողնել մարագը, պատճառաբանելով, որ եթե թուրքական ոստիկանները տեղեկանան նըրանց այնտեղ լինելու մասին, ապա իրեն տնով-տեղով կկործանեն: Գյուղի տանուտերը իմանալով գյուղում հայդուկների երևալու մասին, թողնում է գյուղը և հեռանում: Մարագի երդիկից մի գրություն է գցվում, որի մեջ ասված էր. «Զգույշ և արթուն կացեք, զենքերդ պատրաստ, ասված գիտե, թե ինչ կարող է պատահել, վախեցած քյոխվան, որ գյուղից փախավ, կարող է մատնել: Չորս կողմերս քրդեր են»: Հանգստանալուց հետո խումբը դուրս է գալիս մարագից և հասնում է Գյոլ-Առաշու ձորը: Խմբի անդամներից մեկը՝ Ավոն, խորհուրդ է տալիս ձորից դուրս գալուց հետո մնալ այնտեղ, ապա գիշերով շրջանցել գյուղը: Արաբոն չի համաձայնում, ասելով՝ լաչակներդ ծածկեք գլուխներդ, եթե այդքան վախենում եք քրդերից: Խումբը, որի անդամները կրում էին քրդական համիդիեների համազգեստը, արագ անցնում է քրդական գյուղով: Գյուղի բնակիչները, իմանալով, որ նրանք հայդուկներ են, համախմբվում են և սկսում հարձակումը խմբի վրա: Վարդանը և Արաբոն ցատկում են մացառից մացառ, սարից սար և կռվում են քրդական ուժերի դեմ: Սակայն ուժերը շատ էին անհավասար և քրդերին հաջողվում է շարքից հանել խումբը, որից ազատվում է միայն մի վիրավոր:

Չնայած Արաբոն իր խմբի հետ զոհվեց, սակայն ժողովրդի մեջ տարածված էր, թե նա կենդանի է և գործում է Տարոնում և Սասունի լեռներում, շուտով վերադառնալու և հանդիպելու է ժողովրդի հետ: Նրա մասին երգեր հորինվեցին, որոնք երգում էին թե՛ հայերը և թե՛ քրդերը: Հայդուկային այս խմբի նահատակվումից հետո ստեղծվեցին նորերը, որոնցից մեկը՝ Սերոբ Վարդանյանի (Աղբյուր Սերոբ), իսկ մյուսը՝ բիթլիսցի Մուշեղի գլխավորությամբ: Խմբեր կային նաև Վասպուրականում: Հայդուկային շարժումը դրանից հետո ավելի ծավալվեց:

Թլկանց Օվան էր այն օրերուն, երբ կըհագներ հինցած, շատ հինցած շալվար մը: Ոտքերուն կանցներ կապերով փաթթըված տրեխ, կհագներ տան գործված կապույտ շապիկ, գլխուն ուներ թաղիքե գդակ՝ արախչիին ծալքերուն մեջ կորսըված: Անոր ակռաները սովորականեն ավելի խոշոր, շրթները շողինքոտ էին, երբ կխոսեր: Այդ բոլորեն ավելի ուներ ավըրված աչքեր: Կըսեին, որ աչքերուն մեջ թարթիչներ կբուսնեին ու զինք անհանգիստ կընեին:

Գյուղացիները, մեծ թե պզտիկ, երբ կալ ու կուտի, վար ու ցանի աշխատանքի լծված էին՝ Թլկանց Օվան միշտ գյուղն էր, աչքերուն վրա թաշկինակի չափ փոքրիկ լաթի կտոր մը բռնած: Ան միշտ հոն էր, միմինակ, կռնակը Էքնոյենց պատին կոթնցուցած, նստած էր ոտքերը օճախի պես բաց: Շուները հաճախ կուգային իր քով, կծալլվեին և կամ անոր տըրեխներուն ծայրը հոտվտալով կանցնեին կամաց: Տանտիկին Գարան իրիկվա օճախը վառելու համար դուրսը, արևին կընայեր: Արևը երբ Էքնոյենց պատին վըրայեն սավանի ճոթի պես Օվանին թաղիքե գլխարկին վրա կախվեր՝ այլևս էտինքվա օճախը վառելու ատենն էր: Ան հոն էր միշտ Էքնոյենց պատին տակ, լաթի կտոր մը աչքերուն դեմ բռնած: Տուն ինչո՞ւ երթար: Կինը տունը չէր, զավակն ալ ուրիշին մշակ տված էր: Օվան պիտի սպասեր մինչև երեկո ըլլա. կինը պատառ մը հաց բերեր իր աշխատանքի տեղեն, որ ճաշեին միասին: Մոտ հինգ տարի էր՝ աչքերը կնեղեին զինքը: Ամբողջ հինգ տարի աշխատանք ըրած չէր: Հինգ տարի, գարուն, ամառ թե աշուն, Էքնոյենց պատին տակ նստած էր Օվանը:

Օվան անհամբեր կսպասեր, որ երեկո ըլլար, գյուղացիները դաշտեն տուն լցվեին, ու իր շուրջը շենցնար պահ մը: Իրավ ալ երեկոները գեղի ռենճպերները կերակուրե հետո պահ մը դուրս կելլեին Էքնոյենց պատին տակ, ուր միշտ կար Թըլկանց Օվանը:

— Բարև, Օվան:

— Ասսու բարին:

— Ի՞նչ կա, չկա:

— Սաղութին:

Գյուղացիները կխոսակցեին, կկատակեին: Այդ իրիկվա խոսակցության գըլխավոր առարկան Շոտո Մուսեխին, Թըլանծիկեն բերած էժտեհարի պես գոմեշին մասին էր: Էհ, եթե օր մը Խոճկանց գո-

ՀԱՄԱՍՏԵՂ
(ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԿԵԼԵՆՅԱՆ)
1895—1966

# Փեսա Օվան

մեջին հետ եղջյուր եղջյուրի գային…

Այդ բոլոր խոսակցության ընթացքին Օվանը լուռ էր: Այդ օր կմտածեր այն ձիերու ոտնաձայներուն մասին, որ գրեկին լսած էր հեռվեն:

— Մարկոս, էս օր բան-ման չլսեցի՞ր:

— Ի՞նչ բան, Օվան:

— Հիչ:

Օվան չէր համարձակվեր ըսել, մի գուցե ինքը սխալած էր: Ո՞վ գիտե:

Օվան ոչինչ ըսավ:

Սակայն օր մըն ալ սխալված չէր: Զային կողմեն ձիավորներ մտած էին:

Երեկոյան, երբ գյուղացիները իրար մոտ եկան, բոլորին դեմքը կոճղի երևույթ էր առեր: Անոնք այլևս չէին կատակեր:

— Հարկեր հավաքողներ են եկեր, ըսեցի՞ք:

— Գզիրն էսօր ձիերը ջրել կտաներ:

— Էս նեղ ճար օրերուն տահա էքինները գետինը…

Այդ խոսքերուն մեջն էին, երբ գզիր Մանոն մութին մեջեն, փոքրիկ առվեն անցավ, կանգնեցավ ձիթհանքի տան սյունին պես, ձեռքերն ականջներուն սկըսավ մունետիկ պոռալ: Գյուղն հանկարծակի լուռ պապանձեցավ կարծես:

Ուշ ատեն գյուղացիք հետզհետե իրենց տուները կվերադառնային: Բերանին դանակով իսկ չէր բացվեր:

Տեր Դավթկանց Մարկոսը այնտեղ էր տակավին: Օվան կուզեր խոսիլ հետը, սակայն չէր համարձակեր: Մանավանդ որ ուրիշներ ալ կային, մի քանի անգամ բերան լեցուց խոսելու համար:

Էհ, Թլկանց Օվանին ո՞վ դրամ կուտար:

— Մարկոս:

— Ի՞նչ է Օվան:

— Հիչ…

Չէ, չէ Թլկանց Օվանին մարդ դրամ չի տար, ակամա մտածեց Օվան, կսկծացեցավ ու չըսավ, չըսավ:

Ինչպե՞ս ըներ, վաղը իր դուռն ալ պիտի թակեն, այն ատեն…

— Մարկոս:

— Ըսե, ի՞նչ ունիս, Օվան:

— Ախր գիտես հալս, Մարկոս, երեսուն ղուրուշ ունեի, միտքս դրեր էի վրաս շալվար մը ձգել: Շալվարիս վրա քառսուն պիչիմ կարկտան կա: Շունի հալ է, շունի հալ. վաղը հարկ պիտի հավաքեն: Հիսուն ղուրուշ կպակսի, երեսունին վրա թեմամցնելու համար: Ձեռքե հիսուն ղուրուշ տուր, Մարկոս: Աստված ողորմած է: Դրամդ վրաս չի կորսվիր:

— Աղեկ կըսես, Օվան, ամա քիչ էռենջ Խնկոն որ զիս մեկդի կանչեց, էն էր խոսեցավ: Էքինները գետինը. վաղը մանկըդվարներուն դրամ կպակսի: Տահա գորենը չծրած քիչ մը քաղեր, հոսեր, աղցեր են, որ զավակներուն հաց ժժնեցնե: Երկու ոսկի էն ուզեց ձեռքե, հարկ տալու համար:

— Էհ, լավ, լավ, Մարկոս: Խնկոյին գործը տես. էն մաղ մը զավակներ ունի: Ինձ ալ աստված ողորմած է, հելպեթ դուռ մը կբացվի վաղը,— վրա տվավ Օվան, երբ Խնկոյի թշվառ վիճակն իմացավ:

Օվան այլևս չխոսեցավ: Գրեթե ինքնիրեն անիծեց: Էն ուշ տուն երթողը Օվանն էր: Գիշեր էր ու փողոցները խաղաղ: Վաղը, վաղը, ի՞նչ պիտի ըներ… Ինչ լավ էր, որ վաղն արև չըլլար, ըլլար միշտ մութ ու Օվան փոքրիկ կոշիկի մը մեջ մտած պահվտեր, որ չգտնեին զինքը:

Առավոտուն գյուղը իրարանցումի մեջ էր: Թլկանց Օվան կռնակը Էքնոյենց պատին՝ նստած էր՝ լաթի կտորը աչքերուն դեմը բռնած: Անոր այնպես կթվեր, թե հոգեառները հետզհետե իրենց տան կմոտենային, ինչպես աչքերը, որ սողոսկեներն կմտնեն, կմոտենան տղոցկան կիներու, երկար ճանկերով անոնց սրտերը դուրս կքաշեն ու կհեռանան մութին մեջեն, հովերուն հետ…

Օվան այդ աչքերուն սարսափը կապրեր, և կարծես իր գլխուն վերև կեցած էին մութ, վրաններու չափ մութ թևերով:

Իրավ ալ, տեսնես գզիրը մոտեցավ Օվանին, որ միմինակ նստած էր, լաթի կտոր մը աչքերուն դեմ բռնած:

— Ել տեսնենք, Օվան:

— Հեյ, կոռպակոռդ:

Թլկանց Օվանը գզրին առջևը ինկած, մտավ իր փողոցը:

Թըդ, թըդ, Օվան ներս մտավ, մթության մեջ պարապ փեթակի մեկ անկյունը պահած դրամը վերցուց՝ դուրս ելավ ու դողդողուն ձեռքերով, փոքրիկ ծրարը հանձնեց հարկահավաք ժանդարմերուն:

Մեջը երեսուն ղուրուշ կար, բոլորն ալ մանր դրամ: Սակայն պակաս էր, պակաս:

— Ալ, ալ չկա, աղա,— խոսեց Օվան կմկմալեն:

Այդ օրը ժանդարմները մտրակեցին խեղճ Օվանին ուսերը:

Հաջորդ օրը Օվան տան պղնձե կաթսան տարավ, գյուղին հրապարակին վրա աճուրդի դնելու համար:

Էտինքի ատենն էր. տանտիկին Գարան դուրս նայեցավ: Արևը Էքնոյենց պատին վրա, Թլկանց Օվանի ուսին կմոտենար. էտինքվա ճաշ պատրաստելու ժամանակն էր:

Թլկանց Օվան այդ օր ավելի անշարժ էր:

Երեք օրերը սարսափի պես անցած էին, ինչպես մարախը կանցնի դեռ նոր ցանված բամբակներուն վրայեն: Երեք օր հետո գյուղացին իր բարի ու սովորական կյանքին լծվեցավ:

— Բարև, Օվան:

— Աստու բարին:

— Ի՞նչ կա, չկա:

— Սաղութին:

Իրարու մոտ կուգային, կխոսեին, կկատակեին:

— Աստված է վկա, էսօր քի՛ մնաց չորախները Ծուտո Մուսեղին ու Խոճկանց գոմեշները եղջյուր եղջյուրի գային:

Ու ուշ ատեն կվերադառնային տուն: Այդ երեկո Օվանին կինը ճրագին առջևը նստած իր զավկին ելեկը կկարեր, երբ Օվան ներս մտավ:

— Էհ, կնիկ, տես, էս շալվարս հալի մի կրնա՞ս բերեր: Հա, էստեղ, նորեն քալ վեցավ,— խոսեցավ Օվան մեկ կողմեն շալվարը հանելով: Կինը ի՞նչ կրնար ընել: Շալվարը իր ծունկերուն վրա առավ կարկատելու համար: Մեկ կութ որ կզարներ, երեք կութ կքակվեր: Մաշած էր, մաշած ու ալ կութ չէր բռներ:

— Ինտո՞ր ընեմ, կնիկ, Ֆելեկը, որ թերս երթա՝ ալ քառսուն մոմ օգուտ չըներ: Էս շալվարով դուրս ելլել կամչնամ: Էս քոռնալիք աչքերս ալ չի գուրան...

— Նեղ ճար պարտք ըրե՝ շալվար մը ձգե վրադ, արիմարդ,— կինն էր խոսողը:

— Պարտք. չէ, Մարթա, չէ, Թլկանց Օվանին ո՞վ պարտք կուտա: Կրսեն չաշխատիր, աչքերը քոռ է. կինն է, որ էրիկն ու զավակը կապրեցնե:

Օվանն ի՞նչ ըներ, էդ շալվարով այլևս դուրս չէր կրնար ելլե: Գեթ կկարծեր, որ ինքն ալ իր կարգին բարեկամի ու թշնամիի տեր էր: Էրիկ կնիկ լուռ էին. կնիկն իզուր ճրագին տակ, շալվարը չորս կողմ կդարձներ, ձևի մը բերելու համար:

— Սնտուկեն լաթերդ բերեմ՝ հագիր վաղը,— խոսեց կինը հուսահատ:

— Ի՞նչ լաթ կնիկ,— վրա տվավ Օվան աչքերը բաց-խփելով:

— Փեսայության լաթերդ:

Էրիկ կնիկ լռեցին երկար:

Ամբողջ քսան տարի էր, որ Մարթա ու Օվան ամուսնացեր էին: Ամբողջ քսան տարի Մարթա պահած էր Օվանին փեսայության լաթերը՝ շատ խնամքով ծալած: Օվան քսան տարվա ընթացքին իր փեսայության լաթերը հազիվ քսան օր հագած էր: Կհագներ բարեկենդանի օրերը և կամ երբ հարսանիքի էր հրավիրվեր: Էհ, ինչ լավ օրեր էին: Օվանին հայրը իր մեկ հատիկ տղան կկարգեր: Եկեղեցիին բակը հարիսա զարկավ: Իր մեկ հատիկ տղուն սուղնոց մետաքսե լաթեր ըրավ: Վարդաթիլեն հարս բերավ իր մեկ հատի՛կ տղուն:

Ժամանակը շատ ուշ էր: Մարթա վար իջավ սենյակեն լաթերը բերելու, որ վաղը Օվանը հագներ:

Էրիկ կնիկ այլևս չէին խոսեր:

Օվան զգացված էր, կուզեր լալ մանկան մը պես:

Պառկելու ժամանակ ճրագը երբ պիտի մարեր, Օվան խոսեց վերջապես:

— Էհ, կնիկ, էս օրերո՞ւ պիտի հասնեինք:

***

Հաջորդ օրը տանտիկին Գարան պատուհանեն դուրս նայեցավ, արևն ու Օվանը դիտելու: Բա, ինչ տեսնե, Օվանը փեսայի պես հագվեր նստեր էր, սրունքները օճախի պես բաց: Գարան տան հարսները իր շուրջը հավաքեց:

— Քա, խեր ըլլի, Օվանը փեսա է եղել:

Երեկոյին ռենճպերները տեսան, զարմացան ու կատակեցին:

— Օվան, ինչ է, նոր փեսա՞ ես եղեր:

Անտարակույս Օվան այդ կատակները շատ չէր սիրեր: Էհ, որո՞ւ հասկցներ թե



Նկարը՝ ԳԱՍՏԵԼԼՈ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

մարդ, երբ նեղը մնա՝ փեսայության լաթերը կհագնի:

Գյուղացիք Թլկանց Օվանին այլևս Փեսա Օվան կկանչեին:

Անցան երկար, երկար տարիներ: Ամերիկայի մեջ, օր մը ինձ ծանոթացուցին բարձրահասակ, հաճելի դեմքով, խոշոր ձեռքերով երիտասարդ մը, Բարսեղ Օվանյան:

— Փերչենկցի եմ,— ըսավ ինձ քիչ մը խոշորցած ակռաներու խնդուքով:

Ես իզուր կփորձեի հիշել:

— Մեր տունը Սանդ քարին քովն էր,— վրա տվավ:

— Հա, հիշեցի, հիշեցի, Փեսա Օվանին տղան չե՞ս:

Փարիզ, 1929 թ.

Անծանոթ բառերի ցանկ

արախչի—գդակի շուրջ փաթաթվող վրզնոցանման շոր
շողինք—փալինք
էտինք— ետմիջօրե
էքին— այգի
պիչիմ—տեսակ
չժռած— չհասունացած
ալք— չար ոգի
շորախ— գետափնյա ճահճուտ
ելկեկ— քաճկոն
ֆելեկ— բախտ
սողնոց— թանկ
էժդեհար—աժդահա
ղուրուշ— մանր դրամ Թուրքիայում
տահա—դեռ

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# Տեղանունը պատմում է



## ԵԽՑՈՒՆ ՋՈՒՐԸ

Գյուղից վեր՝ անտառի Վարդոտ կոչվող տեղամասում եղել է հին Փիրջամալը: Այդ են վկայում բազմաթիվ խաչքարերը, շիրմաքարերը՝ 12—13-րդ դարերի արձանագրություններով: Գյուղում կար եկեղեցի, որը հայտնի էր իր սառնորակ ու քաղցրահամ աղբյուրով՝ Եղցու ճուրով (եկեղեցու ջուր):

Եկեղեցին չկա, բայց աղբյուրը իր անունով մի ամբողջ պատմություն է:

## ՐԱՖՖՈՒ ԱՂԲՅՈՒՐԸ

Հայ մեծանուն վիպասանը 1881—82 թթ. շրջագայել է Ղարաբաղում: Երբ այցելել է Դահրավ գյուղը, բնակիչները քեֆ են սարքել մեծ գրողի պատվին գյուղի ամենալավ աղբյուրի մոտ, որն էլ մինչ այսօր կրում է Րաֆֆու անունը:

## ՍԵՎ ԱԿՆԸ

Ասում են աղբյուրի քարերը եղել են ճերմակ-ճերմակ, ու նայողին թվում էր, թե ձյունով են պատված: Բուժիչ աղբյուրից օգտվում էին նաև շրջակա գյուղի բնակիչները: Երբ գյուղը ենթարկվում է ավազակների ասպատակություններին, մարդիկ զարմանքով նկատում են, որ աղբյուրի քարերը սևացել են, ականատես լինելով մարդկային ցավերին: Այդտեղից էլ աղբյուրը ստանում է «Սև ակնը» անունը:

## ԾԸՐԸՎԱՃՈՒՐ

Ծըրըվաճուր աղբյուրը գտնվում է Ղազան (կաթսայի ձև ունեցող) աղբյուրից վերև՝ ձորում:

Ժողովրդական ավանդությունը պատմում է, որ պարսիկների արշավանքի ժամանակ Փիրջամալ գյուղի բնակիչները պատսպարվել են այդ ձորում, շրջապատված թշնամու զորքով: Աղբյուրը փրկել է հարյուրավոր մարդկանց կյանքը, կենդանություն տալով ծարաված հոգիներին, այստեղից էլ հուշում է անունը՝ Ծըրըվաճուր (ծարավ մարդու ջուր):

## ՔՌԱՍՆԻ

Քռասնի գյուղը գտնվում է Կառկառ գետի աջ ափին:

Ըստ ժողովրդական ավանդության՝ պարսիկների արշավանքի ժամանակ անհավասար պայքարում զոհվում են քառասուն քաջեր, որոնք փրկում են շրջակա գյուղերը ավերածություններից: Քառասուն քաջերի նահատակման վայրում հիմնվում է գյուղ, որը կոչվում է Քռասնի (Քառասուն):

## ԽՐԱՄՈՐԹ

Ստեղծվել է 19-րդ դարում: Անվան ծագումը բացատրվում է հետևյալ կերպ. իր գոյության ընթացքում այս գյուղը շատ անգամ է ենթարկվել օտար զավթիչների ասպատակություններին: Եղել են դեպքեր, երբ մարդիկ տարիներով լքել են իրենց գյուղը, պատըսպարվել անտառներում: Եվ պաշտպանության համար գյուղի շուրջը փորել են խրամատներ, որն էլ ժողովրդական լեզվով փոխվել է Խրամորթի:

ԱՐԱՄ ՄԱՐԳԱՐՅԱՆ
(ԼՂԻՄ, գ. Գիշի)

## Ամարասում

Այստեղ եղել է Մաշտոց անունով սուրբ երանելին,
Այստեղ, այս վանքի կամարների տակ,
Ես դեռ այսօր էլ
Զգում եմ նրա խոսքը խնկաբույր
Եվ խոսքը հստակ...
Այստեղ, այս վանքի կամարների տակ.
Արցախ աշխարհի մանկանց սրտերում
Նա սերմանել է
Խոսքը թանկագին,
Անեցրել մարդկանց սրբություններում իր ժամանակին...
Եվ կտակել է,
Որ հաղորդ լինեն իմաստնությանը
Եվ հանճարներին լինեն ունկնդիր...
Ամարաս, եթե դու մինչև այսօր
Կանգուն ես տեղում,
Ապա դա միայն մի բանի համար,
Որ քո տաք գրկում
Եղել է նաև
Սուրբն Մաշտոց այր...

Լուսանկարը՝ ԱՐԱՄ ՕՀԱՆՅԱՆԻ





ԱՐՏԱԿ ՎԱՐԴԱԶԱՐՅԱՆ

# Կեղծ լույս

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՇՕՂԼՅԱՆԻ

Խոտը խանձվել էր ամառվա ընթացքում, աշնան առաջին օրերին անձրևի պուտ չէր կաթացել, դաշտում ծաղիկ չէր մնացել՝ նեկտար չկար: Մի քանի օր առաջ փեթակը քամել էին երկրորդ անգամ: Դժվար հավաքած ձմեռվա պաշար մեղրը կտրել էին մեղվաընտանիքի բերանից: Հիմա լույսը չբացված՝ սառուձոր ընկած նեկտար էին հավաքում ամբողջ ընտանիքով: Նույնիսկ դռնապահ մեղուների մի մասին էին հանել դիրքերից, իսկ ներսում մեղր պատրաստող վարպետ-մեղուներից ոչ մեկը չէր մնացել՝ օրվա ընթացքում ոչ-ոք նեկտար չէր կարողանում բերել: Երեկոյան հոգնած գալիս, կծկվում էին անկյուններում, բըզզալ-խոսելու ուժ անգամ չէր լինում:

Դժվար տարի էր:

Անցյալ աշնանն էին մեղվաընտանիքը փեթակ դրել: Անտառի մի բացատի եզրի կաղնու փչակում բնավորված մեղուն երկար տարիներ ապրում էր բնության պարգև իր կյանքը: Փչակը լիքը մեղր էր լինում միշտ, մեղուների մտքով չէր անցնում երբեք իրենց դատածն ուրիշին տալ:

Անցյալ աշնանը անսպասելի ուժեղ փոթորիկ եղավ: Քամին թափով եկավ շառաչեց կաղնու ճյուղերի մեջ: Ծեր կաղնին երկար ժամանակ զսպված տնքոցով պահպանում էր հավասարակշռությունը: Նա հարյուրամյակների կյանք ուներ: Բունը վառել էին քոչվոր հովիվները, ճյուղերը փռվել էին, հյուսիսին նայող կողմը արդեն չորանալու վրա էր ու չդիմացավ, սկսեց ճռճվել: Նախ գնաց-եկավ մի քանի անգամ, հետո օրորվեց, ծանր թրըմփաց կողքի:

Մեղվաընտանիքի փչակը քարի կպավ, մեղրը ցայտեց փչակի բերանից, մեղուների մի մասը տարերքի բերանն ընկավ: Չհասցրին կարկատել բունը, հավաքել կաղնու կնճռոտ կեղևն ի՛վար ծորացած մեղրը: Բռնեցին, փեթակ դրին: Փեթակը մի մեծ այգու ծայրում էր, մյուս ծայրում տիրոջ կարմիր կղմինդրե տանիքով մեծ տունն էր: Այգում ծառեր շատ կային, և ծաղկի պակաս չպետք է որ լիներ, բայց այգին համարյա չէր մշակվում, ծառերը հազիվ էին տերևակալում՝ ծաղկելը շըռայլություն կլիներ:

Մեղուն հեռուներից նեկտար էր հավաքել, և մայիսի կեսերին փեթակը լիքը մեղր էր… Մի օր եկան, մեղրը քամեցին, թողեցին միայն մոմը, և մեղուները՝ գըլուխները կորցրած՝ բզզում էին չարացած և չէին հասկանում կատարվածի իմաստը: Հետո մոռացան, վիրավորանքի վերքը փակվեց, կրկին գործի կպան և մի քանի ամիս հետո դարձյալ փեթակը շեն ու լի էր:

Երկրորդ մեղրաքամը բոլորովին հուսահատեցրեց մեղվաբնտանիքին: Մեղուները երկար ժամանակ կուշ էին եկել մոր կողքերին՝ ուժ չունենալով բերքի թռչել: Հետո նրանց հավաքական բնազդը հուշեց ապրել, և ընկան սարուձոր՝ լերկացած բնությունից նեկտար պոկելու:

Դժվար ժամանակներ էին:

...Զահել մեղուն հոգնել էր պարապ թռիչքից: Դատարկ չէր ուզում վերադառնալ տուն, բայց օրը մթնում էր անբնական, արևը մայրամուտի ճանապարհին կորցրել էր գլուխը՝ կծում էր: Մեղուն սրսփաց, որ ոչ վախ էր, ոչ՝ ցուրտ, մի տեսակ սարսուռ էր առաջին անգամ ըզգացած: Շուրջը ոչ մի կենդանի շունչ չըկար՝ ոչ մի մրջյուն, ոչ մի թռչուն, ոչ մի թիթեռ՝ բոլորը տապ էին արել դավադիր:

Մեղուն թաթերը քսեց աչքերին, թևերը բացեց և տագնապոտ բզզոցով թռավ դեպի տուն: Ջրի վրայով անցնելիս տեսավ մի քանի ժամ առաջվա ծմծման առուն գորշ հեղեղով լի փրփրած վշշում է ջրակերում: Նրա կարճ կյանքի փորձը պատճառը չէր հուշում, բայց տագնապն ահագնացավ: Աչքերը փակ՝ կտրեց-անցավ ձորը, թռավ ձորապռնկի ընկուզենու կողքով, մտավ դեղնած այգին:

Արևը մայրամուտից առաջ ճեղքել էր ամպերի օղակը, սառը լույս էր տալիս:

Մեղուն դանդաղեցրեց ընթացքը, իջավ ճնճղուկի կտցած մի հազվադեպ ծլըրած խնձորի վրա, փորձեց հյութ քամել կնճիթով:

Մի սպիտակ թիթեռ հայտնվեց անշշուկ, թեթև եկավ կանգնեց խնձորի պոչին: Մեղուն աչքը շլեց թիթեռի վրա: Թիթեռը պտտվեց մեղվի շուրջը: Խաղի էր կանչում, մեղուն խաղալու տրամադրություն չուներ, սոված էր և ձեռնունայն տան դուռըն էր հասել: Թիթեռը ձեռ չէր քաշում՝ չարացնում էր մեղվին: Մեղուն վախեցնող կիսաշրջան արեց, սա խաղի տեղ դրեց, ավելի եռանդուն թափահարեց թևերը: Մեղվի համբերությունը լրիվ ըսպառվեց, թիթեռին խայթելու մոլուցքով նետվեց հետևից, իսկ թիթեռը ճարպկորեն խույս էր տալիս, նորից պտտվում: Այսպես նրանք հասան կարմիր տանիքով տանը: Թիթեռը՝ թեթևսոլիկ խաղից արբեցած՝ մի քանի անգամ բախվեց պատուհանի ապակուն, հետ դարձավ:

Մեղուն ինքնամոռաց բզզում էր, անընդհատ նրան թվում էր՝ ուր որ է պիտի խայթի թիթեռին, բայց սրա համարյա անզոր մարմինը նորից խույս էր տալիս հարվածից...

Թիթեռը մի անգամ էլ ահա-ահա պիտի սպիտակ թեթև հպումով հետ շպըրտվեր ապակուց, բայց ապակու անկյունը ջարդված էր, թիթեռը հավասարակշռությունը կորցրած ներս ընկավ ճեղքից, դիպավ հաջորդ փեղկին և ավարտեց իր մի օրվա կյանքը:

Մեղուն թիթեռի հետևից մտավ երկու փեղկի արանքը, մոլորվեց: Դժվար թըռիչքով վարուվեր արեց, թևերը բախվեցին ապակիներին՝ ջարդվեցին, մարմինը ծանրացավ, աշխարհն սկսեց մշուշվել, թռիչքը հուսահատ դարձավ: Չդիմացավ, իջա՛վ, թե ընկավ փեղկերի արանքի հարթակում, կրկին թռչելու ճիգերից ուժասպառ՝ արդեն մթնող երեկոյի մեջ նրա փոքրիկ ոսկյա մարմնի ծանր տրոփը դարձավ օրհասական:

Երբ ուշքի եկավ, սենյակում լույս էր վառվում, բյուրեղապակյա ջահը լուսածիր ոսկե օղակ էր առաստաղի տակ, ու արևից զատ ուրիշ լուսատու չտեսած մեղվի աչքին սենյակը արևոտ կեսօրվա երջանիկ երազ էր: Ոսկե օղակից ճառագող դեղին բոցի մեջ սեղանի վարդերի փունջը, պատի նախշուն գորգը փրկություն ու կյանք էին մեղվի համար:

Ջարդված թևերը կողքերից քարշ տալով, աչքը լույսից չկտրելով, փրկության ակնկալիքով վեր մագլցեց ապակու վրայով: Շատ վերուվար արեց մեղուն, ոտքերն արդեն հոգնել, սահում էին, նա համարյա սողում էր իր էության անհարիր սողքով, բայց ազատության ելքը չէր գտնում: Թափանցիկ պատը փակում էր նրա ճանապարհը:

Հետո մեղուն այլևս չէր կարողանում շարժվել, բայց աչքը չէր փակում՝ աչքը ոսկե օղակից արձակվող լույսին՝ հույսը չէր կտրում: Ու երբ ինքնամոռացումը մոտ էր, լույսը հանկարծ մարեց: Խավար տիրեց: Մեղվի անզգայացող մարմինն այդ պահին թիկունքից քամի զգաց: Մեղուն հասկացավ, որ ազատության ելքը հակառակ կողմում է եղել՝ ինքը խաբված էր ոսկե օղակի կաշկանդիչ կեղծ լույսով:

Հիմա արդեն սողալու ուժ էլ չուներ, բայց ճիգ արեց քարշ գալու սառը քամու ուղղությամբ:

Լուսադեմին նրա մերձիմահ մարմինը հասավ ճեղքին և քերծվելով գլորվեց դեպի ազատություն...



# Մուշեղ Իշխան

## Արյունահոսում

Վախցիր, երբ խիղճդ կարյունի.
Վէրքը խղճին չունի դարման.
Օր ու գիշեր պիտի բանի,
Մինչև հատնի կյանքի ճամբան:

Ո՛չ ոք կրնա քեզ վշտակցիլ
Խիղճդ ծակող ցավին համար.
Խղճի արյան ամեն կաթիլ
Կիյնա ծածուկ եվ աննշմար:

Վախցիր, երբ խիղճդ անբասիր
Մեղապարտի պես կարյունի
Եվ կդառնա տեր ու դպիր
Կյանքն արյունող ամեն ցավի:

Աչքերուդ դեմ խղճահարի
Պիտի հորդի մեղքը մարդոց,
Պիտի քալե զորքը Չարի
Աշխարհին մեջ տառապակոծ:

Վախցիր, երբ դեմքդ է միշտ ժպտուն,
Բայց կարյունի խիղճդ ներսեն,
Երբ կկիսես հացը մարդուն,
Բայց արյան համ կու գա հացեն...

1967 թ. հունիս

## Աղամորդի

Կսիրեմ քեզ, Աղամորդի՛,
Նետերուն դեմ հազար ցավի
Կուրծքդ պարզած իբրև թիրախ,
Աչքդ հառած հույսին ծավի՝
Դուն կը քալես այդպես խիզախ...
Ետիդ՝ անհուն աղամամութ,
Առջիդ՝ սև սուգ և խոր անդունդ,
Ճամբուն վրա տառապանքի
Դուն կմնաս այդպես ոտքի...

Կսիրեմ քեզ, Աղամորդի՛,
Դուն իմ պատկեր, իմ բախտակից,
Մորդ կաթին հետ հեշտահամ
Դուն կծծես թույն ու թախիծ
Եվ կկրծես՝ հացդ օրվան՝
Շաղված աղի արտասուքով,
Բայց աննահանջ, քաջակորով,
Ճամբուն վրա տառապանքի
Դուն կմնաս այդպես ոտքի...

Կսիրեմ քեզ, Աղամորդի՛,
Հավատքդ խեղճ ցցած հպարտ
Չար ուժերու մեջ վիթխարի,
Իբրև զինվոր վիշապահաղթ,
Իբր ուխտավոր լույս գալիքին,
Ընդմեջ սուտի, ընդմեջ դավի,
Բազմաչարչար, բայց ժպտագին,
Վիհերուն մեջ տառապանքի
Դուն կմնաս այդպես ոտքի...

Կսիրեմ քեզ, Աղամորդի՛,
Կուրծքեդ արյուն երբ կհոսի,
Աչքեդ՝ արցունք, ցավ ու կրակ,
Շրթունքներուդ՝ այրող պապակ,
Կերգես աղոթք ու մեղեդի,
Կերգես կյանքի փառաբանանք
Եվ լեռն ի վեր տառապանքի
Դուն կմնաս այդպես ոտքի...

1967 թ. փետրվար

## Ինծի կը թվի

Ինծի կը թվի՝ ես կամ ու չկամ
Հայոց Սփյուռքի տարածքին անծիր.
Մարմինես պոկված ամեն մեկ անդամ
Աշխարհե աշխարհ եղավ ցան ու ցիր...

Ամեն տեղ հայ եմ, ամեն տեղ դեռ ողջ,
Ավաղ, իմ անձիս օտար եմ սակայն.
Երկրի երեսին ես հյուր եմ անկոչ
Եվ հոգիս չունի տեր ու տիրական...



Նկարը՝ ԳԱՍՏԵԼԼՈ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

Ես ինձ կորոնեմ աշխարհե աշխարհ,
Մերթ հույսով լեցուն ու մերթ հուսաբեկ
Անցնող ամեն օր կը թվի մեկ դար,
Վաղորդայնը գորշ կը դառնա երեկ…

Ջոր Աստված զուգյաց բաժնեցին մարդիկ,
Եվ հիմա մոլոր՝ կապրիմ առանձին.
Իմ հոգիս չունի արդ կայք ու երդիք
Հայոց Սփյուռքի անծայր տարածքին…

## Աշխարհի ցավով

Սիրտս կարյունի աշխարհի ցավով,
Որքան տառապանք, Աստված իմ, չորս դիս,
Կյանքի դաշտերեն փչող ամեն հով
Հառաչ ու կսկիծ կզարնե դեմքիս:

Ամեն զոհերու արյունով եռուն
Հողը ոտքիս տակ կմնա միշտ թաց

Եվ նոր ոճիրներ, իմ շուրջն ու հեռուն,
Կծնին մարդիկ՝ արյունով հարբած:

Գլուխս ինչպե՞ս ես դնեմ բարձիս
Եվ ննջեմ խաղաղ, աներազ քունով,
Երբ անդին անքուն մոտիկ դրացիս
Կհսկե զավկին հոգեվարքին քով:

Սուրի ու սովի կդառնան ավար
Լույսի պես պայծառ մանուկներ սիրուն
Եվ ոտքի կոխան՝ հասկեր անհամար,
Աշխատավորի քրտինքով օծուն:

Ես ինչպե՞ս նստիմ խնջույքի սեղան
Եվ ըմպեմ ուրախ վայելքի գինին,
Երբ որ կխլեն մարդիկ անվարան
Որբի մը բերնեն պատառը հացին:

Աստված իմ, որքան անարդար վճիռ.
— Ես ինչպե՞ս կրնամ քար դնել խղճիս…
Կյանքեր թևաբեկ և շղթայակիր.
— Աշխարհի ցավով հիվանդ է հոգիս…

## Մարդ արարած

Տարօրինակ, տարօրինա՞կ մարդ արարած,
Մոմ մը լույսով՝ խավարին մեջ համատարած
Կհալածես դուն տեսիլքներ արևավառ,
Կխարխափես և խավարին չես հավատար…

Արցունքներուդ միգամածին խորեն տմույն
Գիտես նայիլ աղշալույսի ճանանչներուն.
Սուգի քողին տակ հուսալից դուն սիրահար՝
Կտառապիս և վիշտերուդ չես հավատար:

Վզիդ շղթա և թևերուդ ծանր կապանք՝
Դուն կփորձես արծիվներու վայել ճախրանք
Եվ այս կյանքի մեծ բանտին մեջ
բազմակամար
Կխեղդվիս՝ շղթաներուդ չես հավատար:

Փուշ ու տատասկ քեզ կարյունեն ճամփուդ
վրա,
Բայց խոցոտված քու մատներով արյունլվա
Դուն կորոնես ծաղիկներու հոգին պայծառ,
Ցավեդ կոռնաս և ցավերուդ չես հավատար:

Տարօրինակ, տարօրինակ մարդ արարած,
Քու ձեռքերով հողին կուտաս կյանքեր
ծաղկած,
Կզգաս դեմքիդ մահվան քամին և հողմավար
Կիյնաս անշունչ, սակայն մահվան չես
հավատար:

1964 թ. Նոյեմբեր



# ՍԱՐԻՂԱՄԻՇ.

Պատմական Հայաստանի երկարատև, խոցումներով ու բզկտումներով լեցուն տարեգրության մեջ դժվար է Սարիղամիշից զատ նշել իր չափերով, բնակչության քանակով մեկ այլ նման փոքր բնակավայր, որը, սակայն, այնքան կարևոր ու տպավորիչ դեր է խաղացել պատմական անցուդարձերում: Ասենք նաև, որ չնայած Սարիղամիշը (նրա տեղում գտնված հինավուրց բնակավայրը) հիշատակվում է վաղնջական ժամանակներից՝ ուրարտական թագավոր Արգիշտի 1-ի սեպագիր վկայագրերում, նրա հետագա, այդ թվում նորագույն ժամանակների կյանքը, պատմությունը խնամքով փակված է ժամանակի թանձր ու անթափանց վարագույրներով: Մեր դարի սկզբի Սարիղամիշ քաղաքն էլ անչափ աղքատ տվյալներ է թողել իր կենսագրությունից, իր մարդկանց ապրելակերպի ու զբաղմունքի մասին: Ամենուրեք Սարիղամիշը հիշվում է որպես կարևոր ռազմաստրատեգիական հանգույց, ռուս-թուրքական պատերազմի թատերաբեմերից մեկը, «ամենաակտիվ գործող անձ», կովախնձոր՝ կարճ ժամանակահատվածում ձեռքից-ձեռք անցնելու իմաստով:

20-րդ դարի սկզբներին Սարիղամիշի բնակչությունը չէր անցնում 5000-ից, հիմնականում՝ արհեստագործ ու առևտրական, հողագործ ու անասնապահ հայեր, ինչպես նաև աղանդավոր ռուսներ: Ի սկզբանե այն հայտնի էր որպես ռազմական ամուր բերդաքաղաք, որը գտնվում էր տնտեսական և ռազմական կարևոր նշանակություն ունեցող ճանապարհի վրա· այն միացնող հանգույց էր Ալեքսանդրապոլ (Լենինական)—Կարս ու Էրզրում—Երզնկա երթուղում: Տեղավորված էր Մեծրաց լեռների փոքր թեքությամբ ցած սահող սարալանջին, Եղեգնուտ անունը կրող գետի աջ ափին: Մինչև քաղաքի վերին եզրը սարն անտառածածկ է, գերակշռում են եղևնիներն ու խեժատու այլ ծառատեսակները, որոնց փայտանյութը հնուց ի վեր տարվում էր երկրի այլ քաղաքներ, դրանով իսկ զարկ տալիս փայտամշակման արհեստների







Տեսարաններ Սարիղամիշից

1914—15 թթ. պատերազմ. Սարիղամիշի կռվից հետո, սպանված ու վիրավոր թուրքեր

# ՓՈՔՐԻԿ, ԲԱՅՑ ԵՎ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ՔԱՂԱՔ

զարգացմանը: Բնակելի տները հիմնականում միհարկանի են, սպիտակ քարաշեն, բարետես ու կղմինդրածածկ, ինչը մի առանձին հմայք էր հաղորդում բարձրադիր քաղաքին: Դրանք դասավորված են քիթ-քթի, կողք-կողքի, մեծ խըտությամբ: Քաղաքի տարածքում գտնվող ռուսական բանակի մեծաքանակ զորանոցները անմիջապես անտառի փեշին, տեղ-տեղ խորքերում են «ծվարած»: Երևում է, որ դրանց տեղն ու դասավորությունը հմտությամբ է որոշված: Դրանք երկհարկանի են, նույնպես սպիտակաքար, խնամքով «հարդարված» դեմքով ու տանիքներով: Ասենք, որ առաջին համաշխարհայինի տարիներին Սարիղամիշում էին գտնվում ռազմական պահեստներ: Նախասովետական հրատարակության փոստային բացիկները մեզ են ներկայացնում և՛ քաղաքի ընդհանուր տեսարաններ՝ Վերին և Ներքին թաղամասերով, և՛ ռազմական զորանոցներ: Դրանցից մենք իմանում ենք բնակավայրում հանգրվանած Կուբանյան, Ելիզավետպոլյան ու երաժշտական գնդերի մասին: Տեսարաններից մեկում պատկերված «կայազորային եկեղեցին», որ քաղաքի աչքի ընկնող կարևորագույն կառույցն էր, հայռուսական ոճերի միասերմամբ է կառուցված: Կանոնավոր փողոցները բացակայում են, համարյա բոլոր լուսանկարներում աչքի է ընկնում քաղաքի հյուսիսային մասով ձգվող, ոլորապտույտ շրջադարձերով, տեղ-տեղ խճածածկ միևնույն փողոցը, մեկ ուրիշը տանում է դեպի հարավ՝ զորանոցները, և շարունակվում անմիջապես անտառի եզրագծով: 1913 թ. շահագործման հանձնվեց Անդրկովկասի գլխավոր երկաթուղային ճանապարհներից մեկը հանդիսացող Կարս—Սարիղամիշ երկաթգիծը, որը Ալեքսանդրապոլի միջոցով քաղաքը կապում էր «արտաքին աշխարհի» հետ: Կարճ ժամանակից հետո այն շարունակվեց մինչև Էրզրում, դրանով իսկ անհրաժեշտ ռազմամթերքով ապահովելով ռուսական բանակի առաջապահ զորամասերին: Ինչպես նկատում եք, Սարիղամիշն ինքը բավակա-

նին փոքր բնակավայր լինելով, կարևոր ռազմական նշանակության բազա էր, և պատահական չէ, որ քաղաքի տարեգրության հայտնի էջերում ամենուրեք շոշափվում են այդ ասպարեզում կատարված բազում անմոռաց դրվագներ, սկսած 1877 թ. հունիսից, երբ քաջահմուտ զորահրամանատար, հայազգի գեներալ Լորիս-Մելիքովի գլխավորությամբ ռուսական բանակը և հայ կամավորական ջոկատները օսմանյան գիշակերներից մաքրեցին քաղաքը՝ մինչև 1914—15 թթ. առաջին համաշխարհայինի թեժ օրերը, երբ բարձրագոչ հնչեց Սարիղամիշի ճակատամարտի անունը՝ որպես ռուսական զենքի ու զորքի փառքի վկայություն, մարտի խորաթափանց վարման խորհրդանիշ: Այդ օրերին պատմական հուշամատյան մտավ «Սարիղամիշյան օպերացիա» անունը: Թուրքական բանակը իր տխրահռչակ, արյունռուշտ ռազմական մինիստր Էնվերի գլխավորությամբ կործանիչ ջախջախման ենթարկվեց՝ տալով մոտ 90 հազար զոհ: Այն օրերին, երբ Թիֆլիսում կատարյալ խառնաշփոթ էր տիրում՝ թուրքական յաթաղանից ազատվելու իրարանցման պատճառով, Սարիղամիշը չերերաց, դեռ ավելին՝ հանդուգն ապտակ հասցրեց 20-րդ դարի մարդակերներին: Ահա ևս մի տեսարան՝ ականատեսի աչքերով վավերացված մի փաստաթուղթ-լուսանկար, որում ջարդուփշուր եղած թուրքական բանակի ենիչերներն են: Այս հաղթանակի բարոյական ոգին էր առավել գնահատելի. անկասելի հարվածներից հետո մի քանի ամսվա ընթացքում փրկվեցին հայոց Արճեշ, Մուշ, Վան ու Մանազկերտ, Շատախ ու Բիթլիս քաղաքները, հետագայում՝ Էրզրումը, մյուսները... Իսկ 1920 թ. թուրքերը վերստին ներս խուժեցին ու գրավեցին քաղաքը, սրի քաշելով այնտեղ մնացած բայ բնակչությանը: Եվ մենք սարիղամիշյան տեսարաններին հրաժեշտ տալուց առաջ դիտում ենք մեկ այլ տեսարան, որում կուբանցիների եղբայրական գերեզմանին այցի եկած զինվոր է պատկերված: Եկել է նա, լռելյայն արձանացել չկարդացվող գրառումներով հուշատախտակ ու սգո պսակ կրող փայտե խաչով հողաթմբի մոտ ու հարգանքի տուրք է մատուցում Սարիղամիշի հողում անմահացած զինակից իր եղբայրների հիշատակին...

ՌԱՖԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ
ԻԳՈՐ ՋԱՔԱՐՅԱՆ

Հայոց Արշակունի թագավորների իշխանության օրոք Հայաստանի պետական կարգը, ինչպես գիտենք, հիմնականում ժառանգվել էր Երվանդունիների և Արտաշեսյանների ժամանակներից: Իր բնույթով դեռ ավելի հին էր, գալիս էր Հայոց Արարատյան թագավորության դարաշրջանից: Դա միապետական կարգ էր. պետության միանձնյա ղեկավարը թագավորն էր (արքան): Նա էր երկրի ներքին կյանքին վերաբերող կարևոր որոշումներն ընդունում, պատերազմ հայտարարում կամ խաղաղություն ու դաշինք կնքում հակառակորդի հետ: Թագավորի օգնականը, գլխավոր հենարանը և խորհրդատուն արքունիքն էր, որ բաղկացած էր ատենադպիրից, վարչական, տնտեսական, ռազմական, դիվանագիտական ղեկավարներից ու խորհրդատուներից: Արքունիքը գտնվում էր մայրաքաղաքում: Արշակունիների ժամանակ Հայաստանի մայրաքաղաքներն են եղել նախ Արտաշատը, հետո Վաղարշապատը, ապա՝ Դվինը:

Հայաստանում բնակչությունը բաժանված էր խավերի: Նախ իրարից տարբերվում էին երկու հիմնական խավերը, մի կողմից ռամիկը (ժողովուրդը), այսինքն շինականները (գյուղացիները), արհեստավորները, առևտրականները, մյուս կողմից ազատանին կամ ազնվականությունը: Ազատանին արտոնյալ խավն էր, հնագույն ժամանակներից այդ խավի ներկայացուցիչները ազատ էին հողագործական, անասնապահական, արհեստավորական աշխատանքներից: Նրանք ունեին կալվածքներ, հարկատու գյուղեր, շինականներ: Նրանց գլխավոր պարտականությունն էր զինվորական ծառայությունը և պատերազմներին մասնակցելը: Ամբողջ հարավ-արևմտյան Ասիայում հայտնի հայոց հզոր այրուձին (հեծելազորը) բաղկացած էր հայ ազատանիից:

Ազատանիի մեջ էին մտնում բդեշխները, նախարարները, իշխանները, սեպուհները: Կային նաև կիսազատներ կամ կարճազատներ, որ հայ ազնվականության ամենաստորին խավն էր: Բդեշխները և նախարարները միաժամանակ իշխան էին: Սեպուհները ավելի ստորին կարգի իշխաններ էին:

Բդեշխները Մեծ Հայքի սահմանային չորս աշխարհների տերերն էին: Այդ աշխարհներն էին՝ Նուշիրական (Պարսկահայք), Աղձնիք, Ծոփք, Գուգարք: Մեծ




**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ԵՐԵՍՈՒՆՅՈԹԵՐՈՐԴ

# Արշակունյաց Հայաստանի պետական և հասարակական կարգը

Հայքի մյուս աշխարհներում և գավառներում իշխում էին տարբեր նախարարներ: Մեծ ու փոքր նախարարությունների քանակը հասնում էր հիսունի: Առավել խոշորներից էին Մամիկոնյան, Արծրունի, Կամսարական, Խոռխոռունի, Բագրատունի, Ամատունի, Գնթունի, Մարդպետական նախարարությունները:

Թագավորից սկսած մինչև կիսազատներն իրենց արտաքին նշաններով տարբերակվում էին միմյանցից: Արքունիքում նախարարներն ըստ իրենց նշանակության հատուկ տեղեր ունեին, որոնք բարձեր էին կոչվում: Գլխավորը թագավորն էր իր գահի վրա, նրա աջ ու ձախ կողմերում շարված էին 400 նախարարական բարձեր: Որքան բարձրաստիճան էր նախարարը, այնքան նրա բարձը մոտ էր թագավորի գահին: Այս ամենի մասին իմանում ենք պահպանված մի փաստաթղթից, որ կոչվում է «Գահնամակ»:

Թագավորն ուներ իր հատուկ հագուստը և թագը: Հագնում էր կարմիր կոշիկներ: Բդեշխներն իրավունք ունեին միայն մի ոտքին հագնել կարմիր կոշիկ (մյուս ոտքին՝ կանաչ): Մնացած նախարարները կարմիր կոշիկ հագնելու իրավունք չունեին: Հայոց թագավորն ուներ իր դրոշը, որ համահայաստանյան էր: Արշակունիների դրոշը նարնջագույն էր՝ վրան երկու արծվի պատկեր: Բդեշխներից ու նախարարներից յուրաքանչյուրն ուներ իր դրոշն ու զինանշանը (արծիվ, առյուծ և այլն): Բդեշխներն ու նախարարները թագավորին ներկայանալիս կամ հանդեսների ժամանակ հագնում էին իրենց հատուկ տեղական համազգեստները:

Բդեշխությունները և նախարարությունները ենթակա լինելով թագավորին՝ հարկ էին վճարում արքունիքին և իրենց զորքով մասնակցում թագավորի մղած պատերազմներին:

Յուրաքանչյուրն ուներ իր մշտական զորաքանակը տարբեր մեծությամբ: Տասը հազար և ավելի զորք ունեցողները կոչվում էին բյուրավորք (բյուր հին հայերեն նշանակում էր տասը հազար), մինչև հինը հազար զորք ունեցողները՝ հազարավորք, մինչև 1000 զինվոր ունեցողները՝ հարյուրավորք:

Պատերազմի ժամանակ բդեշխները և նախարարները իրենց զորքի մի մասն էին տրամադրում թագավորին. օրինակ, Աղձնիքի և Գուգարքի բդեշխներից յուրաքանչյուրը տալիս էր 4500, Սյունյաց նախարարը՝ 19400 զինվոր:

Հայոց արքունիքն էլ ուներ իր արքունական մշտական զորաքանակը, որ ենթակա էր թագավորին:

Արքունական զորաքանակը կազմվում էր ոստանիկներից: Ոստան նշանակում էր կենտրոն, մայրաքաղաք: Ոստանիկները թագավորի ազգական ազատանիներն էին: Նրանք բնակվում էին կամ հայոց մայրաքաղաքում, կամ կենտրոնական Այրարատ աշխարհի մի այլ մասում և



Մուշեղ Մամիկոնյան

թագավորի ամենավստահելի խավն էին կազմում: Թագավորի, նրա եղբոր զավակները, թոռները, եթե թագաժառանգ չէին, Այրարատում բնակվելու իրավունք չունեին:

Բացի մշտական զորամասերից, որ հիմնականում այրուձին էր, կային նաև զորակոչային և աշխարհազորային զորամասեր, որոնք կազմվում էին պատերազմի դեպքում և մեծ մասամբ հետևակ էին:

Բդեշխական ու նախարարական զորամասերն ունեին իրենց զինվորական դրոշները ու զինանշանները: Հայկական բանակների զենքերն էին նետ ու աղեղը, նիզակը, բիրն ու տեգը, սուրը, պարսատիկը, ւշտեն, բաբանը և այլն: Զինվորները գլխներին դնում էին սաղավարտ, մարմնին հագնում էին մետաղե զրահացանց, ունեին վահան:

Արքունիքի կողմից հայ նախարարներին տրված էին ժառանգական պաշտոններ: Օրինակ, երկրի ընդհանուր զորահրամանատարությունը, որ կոչվում էր սպարապետություն, Մամիկոնյաններինն էր: Հայոց սպարապետը լինում էր Մամիկոնյան նախարարական տնից: Արքու-

Մերուժանի մահը

նիքի ղեկավարությունը, թագավորի գլխավոր խորհրդատուի և Արշակունյաց գահի պաշտպանի, ինչպես նաև արքունական կալվածքների ղեկավարի և թագավորի կանանոցի հսկիչի պաշտոնը կոչվում էր մարդպետություն: Այդ պաշտոնը Մարդպետական տանն էր պատկանում, պաշտոն վարողը կոչվում էր Հայր Մարդպետ:

Շատ պատվավոր էր հազարապետության պաշտոնը, որ պատկանում էր Ամատունիների և Գնունիների նախարարական տներին: Հազարապետը ղեկավարում էր հարկերի հավաքումը, ամրոցների, ճանապարհների, ջրանցքների և այլ կարգի պետական մեծ շինարարությունները, անտառատնկումը:

Կար թագադիր ասպետի պատվավոր պաշտոնը, որը Բագրատունիներինն էր: Բագրատունի թագադիր ասպետը թագադրում էր հայոց արքային, նա պետական կարգի նկատմամբ հսկողություն էր կատարում:

Մաղխազությունը մի պաշտոն էր, որի պարտականությունն էր արքունական զորքի հրամանատարությունը, թագավորի և արքունիքի պաշտպանությունը: Այս պաշտոնն էլ Խորխոռունի նախարարներին էր պատկանում:

Եկեղեցին հայերի հոգևոր կենտրոնն էր: Բացի դրանից, դատական որոշ հարցերի լուծումը եկեղեցու ձեռքին էր: Հայոց կաթողիկոսը գումարում էր եկեղեցական ժողովներ, որոնցում մշակվում էին հոգևոր, քրեական և քաղաքացիական օրենքներ:

Մեծ Հայքի կաթողիկոսական աթոռը ժառանգական էր, պատկանում էր Գրիգոր Լուսավորիչի տոհմին (թեև այդ ժառանգականությունը երբեմն ընդհատվում էր): Կաթողիկոսները սովորաբար ձեռնադրվում էին Կապադովկիայի Կեսարիա քաղաքում, որ Արևելքի քրիստոնեության կենտրոնն էր: Նախքան ձեռնադրվելը ապագա կաթողիկոսի նշանակմանը մասնակցում էին թագավորը, հոգևորականությունն ու առավել աչքի ընկնող նախարարները:

Հին Հայաստանում թագավորի, բդեշխների, նախարարների, սեպուհների, ինչպես և եկեղեցու տնտեսական ուժը հողատիրությունն էր: Այրարատ կենտրոնական աշխարհի հողերը հիմնականում թագավորական տանն էին պատկանում, նաև թագավորի ազգականներին: Թագավորն իր հողերից ժամանակավոր կամ մշտական պարգևներ էր տալիս իրեն առավել նվիրված կամ պատերազմում մեծ ծառայություններ մատուցած ազնվականներին: Մեծ Հայքի այլ վայրերում էլ արքունիքը հողեր ու բերդեր ուներ:

Թագավորի և նրա մերձակիցների սեփականությունն էին նաև մի շարք որսատեղիներ, ձկնորսարաններ, ոսկու, արծաթի, աղի և այլ հանքեր՝ Մեծ Հայքի տարբեր մասերում:

Բդեշխները, որոնք իրենց աշխարհներում փոքր թագավորներ էին, նույնպես հողային մեծ կալվածքներ ունեին: Իրենց տնտեսական և քաղաքական հզորության շնորհիվ, ինչպես և Մեծ Հայքի ծայրամասերում գտնվելու պատճառով բդեշխները մյուս նախարարների համեմատ ավելի մեծ ինքնավարություն ունեին: Երբեմն, երկրի ծանր պահերին փորձում էին կենտրոնական իշխանությունից անկախ դառնալ: Մենք գիտենք, որ, օրինակ, Ծոփքը մի շարք անգամ անջատվել է Մեծ Հայքից: Նույնը արել է Գուգարքը: Դեռ Արարատյան թագավորության ժամանակներից այդ ծայրամասային աշխարհները կենտրոնից անկախ դառնալու հակումներ ունեին:

Մյուս նախարարություններից յուրաքանչյուրը ևս ուներ իր հողային մեծ կամ փոքր կալվածքները: Հողատեր էր նաև հայոց եկեղեցին: Տրդատ Մեծը հեթանոսական մեհյանների և քրմական դասի հսկայական հողամասեր նվիրեց եկեղեցուն: Դրանից հետո էլ շատ նախարարներ, սեպուհներ եկեղեցուն մեծ կամ փոքր հողակտորներ էին նվիրում: Շատ գյուղեր իրենց ստացվածքի մի մասը տալիս էին հոգևորականներին:

Իրենց հողամասերն ունեին Հայաստանում գոյացած հոգևոր միաբանությունները (անապատները): Դրանք կուսակրոն հոգևորականների ընկերություններ էին, որոնք բնակվում էին գյուղերից ու քաղաքներից առանձնացած: Այդ հոգևորականների մի զգալի մասը հողագործությամբ ու այգեգործությամբ էր զբաղվում, այդպես ձեռք բերում իր կենսամթերքը, մի այլ մասին մթերք էին մատակարարում հարևան գյուղացիները: Հետագայում այդ հոգևորականները ունեցան իրենց վանքերը, որոնք հոգևոր, մշակութային և ուսումնական կենտրոններ էին:

(շարունակելի)

## ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԻՐԱԶ



# Պատգամ

**Բոլոր երկրների հայեր, միացե՛ք:**

Իմ սուրբ արյունակիցներ, սփյուռքի՝ հատկապես երիտասարդություն, հոգևին սեղմում եմ ձեզ սրտիս սրտին, համբուրում եմ ձեր հայկական չաղարտված ոգիները և գիշերն ի բուն մտաշխարհիս մեջ աղոթում եմ, որ միշտ ու հանապազ հայ մնաք մինչև ողջ ազգի խմբվելը մեծ հայր՝ Մասիսի շուրջը...

Այժմ, այս դաժան դարում ամեն մի հայ մի մեծ Մաշտոց պիտի լինի... Մեր ճակատագիրն է ազգահավաքը՝ մեր բոլոր ազատ ու բոլոր անազատ հողերի վրա, ամեն ազգի փրկությունն իր մեջ է միայն, հավաքականի մեջ է իր հավերժը, այդպես էլ հայ ազգինը: Վեհափառ խաղաղության մեծ վերքն է հայերիս ցրվածությունը:— Այս իսկ պատճառով գոռում եմ՝ բոլոր երկրներում ցրված հայեր, միացե՛ք... Միացեք, որ բռունցքվեք այս իմ հավետ անբաժան մատներիս պես, կամ այս անտառվող ծառերի նման, կամ այս ծաղկանց ցեղերի նման՝ մանուշակը մանուշակի հետ է ցեղավորվում, ամենուրեք նարգիզը՝ նարգիզ ցեղի հետ միասին ծաղկում, վարդը վարդի հետ է փնջվում բոլոր երկրներում, նունուֆարը չի ձուլվում վարդերի հետ... մնում է հայ... Ինչ որ Աստված է ծնել. նույնիսկ արևածաղիկը՝ վայրի տեղով էլ ցեղը չի փոխում, և եթե նմանվում է, նմանվում է միայն երկնքից վար չիջնող արևածաղկին, արևին միայն... Այսպես է մնացած ցեղերի գոյանքը հավետ, չարության ծաղիկներն էլ, փուշն էլ փուշ է մնում, գայլը չի անցնում աղվեսացեղին՝ թեպետ նախանձում է աղվեսին, եղնիկը փղի չի փոխում իր մեղմիկ ցեղը, թեև հզոր է ցեղը փղի, էլ ինչո՞ւ հայրենավախները ցեղափոխման անդունդն ընկնեն, էլ ինչո՞ւ հայոց երիտասարդությունը լեզվի ընդդեմ խելագրկի: Աստված ընդդեմ:

Որտեղ հայ կա՝ բերեք սեղմեմ իմ սրտին,
Թե պանդուխտ է՝ վիշտը մեղմեմ իմ սրտին,
Թե Մասիսն է՝ ինձ Մասիսին կթաղեք,
Որ հավիտյան սարս սեղմեմ իմ սրտին:

Լուսանկարը՝ ԱՐՄԵՆ ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆԻ

ԳԵՎՈՐԳ ԴԵՎՐԻԿՅԱՆ

# Թութը



Մեր տանտեր Հովսեփի պարտեզում թթի ծառ չկար, և դա Խաչատուր հորս կարծիքով շատ մեծ պակասություն էր: Ու թեև համարյա մրգատու այլ ծառեր էլ չկային, սակայն հայրս դրանց չգոյությանը չէր էլ անդրադառնում: Նրա խոսքը միշտ էլ թութ չլինելու մասին էր: Այո, միայն ծիրանի ծառեր էին, և մրգի այդ տեսակին թափարզա էին ասում: Թե այդ ինչ անուն էր, ես չգիտեի, բայց մի բան գիտեի, որ ծիրանը հրաշալի էր: Կլորավուն այդ պտուղները Արաբկիրի արևի զորությունից հասունանալիս այնպես էին ճաքում, որ թվում էր՝ միջից մեղր է ծորում: Ան[illegible] պատեր[illegible] էր, մեղրի մասին մարդիկ վաղուց էին մոռացել ու ահա այս ծիրանի քաղցրությունն էր, որ հիշեցնում էր, թե մի ժամանակ նաև այդպիսի բան է եղել:

Բայց, մեկ է, թեկուզ և այս ծիրանի քաղցրությունը՝ հորս կարծիքով ծննդավայր Ակն քաղաքի թթի քաղցրությանը չէր հասնի: Հայրս որևէ բանի քաղցրությունը որոշելու մի չափանիշ ուներ՝ Ակնա թութը: Ու նույնիսկ Ռոստովում, մեր տան փոքրիկ բակում, ինչպես մայրս էր պատմում, հայրս թթի մի քանի ծառ էր տնկել: Բայց այդ թութը որևէ համ չէր

ունեցել, երևի արևը չէր քաղցրացրել և հետո վայրի էր եղել, այսինքն՝ չպատվաստված: Դե, պատվաստած թութ որտեղի՞ց գտներ: Ստիպված էր եղել նաև մի քանի ծիրանենիներ տնկել, որոնք էլ անհամ պտուղներ էին տվել, քանի որ նույնպես վայրի էին եղել՝ դառնակորիզ: Սրանք ավելի շատ թթի ու ծիրանի մասին հուշեր էին արթնացրել, քան դրանց համը տվել: Բայց գոնե հիշեցրել էին, և դա էլ հորս համար քիչ բան չէր եղել: Հայրս, իհարկե, ծիրան սիրում էր, սիրում էր նաև մյուս մրգերը, բայց թութն ուրիշ բան էր նրա համար: Թութը վեր էր ամեն ինչից, թութը նրա համար մրգերի թագուհին էր: Բայց գոնե թութ էր կերածը: Իսկ ամենից շատ Ջանգվի ձորի թութն էր սիրում: Նրա ասելով տեղանքը թե՛ ծննդավայրի Եփրատի ձորն էր հիշեցնում, և թե՛ թութն էր ավելի քաղցր էր ու հատիկներն էլ՝ ավելի մեծ:

Թեև այն ժամանակ մենք պարտեզ չունեինք և միրգը միայն գնում էինք շուկայից, այն էլ՝ շատ հազվադեպ, կամ էլ՝ ոչ հաճախ հարևաններից, բայց մեկ է՝ ես թութ չէի ուտում: Բայց շատ էի սիրում հորս ու մեծ եղբորս հետ գնալ Ջանգվի ձորը: Հայրս թութն էր վայելում, իսկ ես ծաղիկներ էի քաղում, վայրի ծաղիկներ: Մի անսահման ու անբացատրելի սեր ունեի ծաղիկների նկատմամբ: Իսկ հայրս թութը սոսկ չէր ուտում, այլ՝ վայելում էր: Ինձ թվում էր՝ թութ ուտելու հատուկ ձև ուներ: Իհարկե, մենք այնքան էլ հաճախ չէինք Ջանգվի ձորը գնում: Նախ, որ այդքան ժամանակ չէր լինում զբոսանքի վրա վատնելու և երկրորդ՝ գնալ-գալը, ձորն իջնել-բարձրանալը այնքան էլ հեշտ չէր: Այն ժամանակ, քանի որ փողոցները քարքարոտ էին, դար ու փոս, ձոր իջնող ճանապարհն էլ՝ ոլոր-մոլոր, իրոք բավական հեռու էր թվում: Ահա թե ինչու ձոր գնալ-գալը մի մեծ ու հաճելի զբոսանք էր ինձ համար և ոչ մի դեր չէին խաղում հոգնությունն ու երկար ճանապարհը: Ես, իհարկե, ահով էի նայում փրփրած Ջանգվին, հատկապես գարնանը, վախենում էի մոտենալ, որովհետև շատ դեպքեր էին պատմում խեղդվածների մասին, և իրոք էլ շատ էր ահարկու ջրի ձայնը: Բայց և շատ էր հաճելի ու զով նրա ափերին: Ու ինձ թվում էր՝ ամենից շատ թութը որ կա՝ Ջանգվի ձորում է:

Բայց շուտով ստիպված էի կարծիքս փոխել, երբ մեր հարևաններից մեկի տղայի հետ Գառնի գնացինք: Հայրս էր, ավագ եղբայրս՝ Արամը, և ես: Ոտքով գնալը հեշտ չէր, բայց գնացինք, հատկապես ինձ համար, քանի որ ընդամենը տասը տարեկան էի: Արդեն մթնում էր, որ հասանք ու մի կտոր գարեհաց ուտելուց հետո անմիջապես քնեցի: Առավոտյան արթնացրին ու ասացին, որ տեղ ենք գնալու: Թեև հոգնած էի դեռ, սակայն նոր վայրեր տեսնելու հաճույքն ավելի մեծ էր: Քանի որ մեր հոգնածությունը չէր անցել, հարևանի տղան որոշել էր այդ օրը մեզ թթանոց տանել, որն իբր ավելի մոտ էր, իսկ հաջորդ օրը միայն՝ Գեղարդ գնալ: Թթանոցը շատ էր հորս սրտովը և գնացինք: Բայց պարզվեց, որ գնալն այնքան էլ հեշտ չէ: Մեր հարևանի տղան անմիջապես մի ճյուղ կտրելով ինձ համար ձեռնափայտ շինեց, որը բավական օգնում էր վերելք բարձրանալիս: Իջանք Գառնիի ձորն ու դիմացի սարով սկսեցինք վեր բարձրանալ: Ճանապարհը մի արահետ էր շատ զառիվեր, և հաճախ հետ էի սահում: Բայց բարձրանում էի: Վերջապես հասանք և այդ թթաստանը: Թութի ծառերի մի հըսկայական այգի էր: Հարևանի տղան պատմում էր, որ տարիներ առաջ մարդիկ տնկել էին այս թթաստանը շերամորդ աճեցնելու համար, բայց ինչ-ինչ պատճառներով չէր հաջողվել, և ահա այդպես մնացել էր: Ու քանի որ շրջակայքում գյուղ չկար, ուստի և թութը հավաքող էլ չկար, ու այդպես հասունանում, վայր էր թափվում ու մնում: Ու քանի որ թե քաղցած էի և թե ծարավ, ես էլ էի ուտում: Իսկ հորս ասելով դա աշխարհի ամենալավ վայրերից էր: Ու մինչև երեկո վայելում էր այդ, նրա ասելով՝ դրախտային միրգը: Նույնիսկ տարիներ անց նա մեծ սիրով էր հիշում այդ թթաստանը:

Բայց ահա մենք էլ էինք մեր տունն ու պարտեզը ունենալու: Տունը, որ գնելու էին մերոնք, Արամ եղբորս հետ գնացինք տեսնելու: Հում աղյուսից շինված, ներսում ծեփը տեղ-տեղ թափված, երկու սենյակից բաղկացած տուն էր, միահարկ ու հողե կտուրով: Բայց տուն էր: Եվ կարծում եմ՝ հայրս այդ տունը գնելու որոշումը կայացրել էր ոչ միայն շատ մատչելի գնի շնորհիվ, այլև բակում եղած մի մեծ թթենու պատճառով: Ասենք միակ աչքի ընկնող ծառը պարտեզում սա էր. մնացածները մանրիկ ծառեր էին, որոնք լավ

չջրելու կամ ընդհանրապես չջրելու պատճառով նվազ էին մնացել ու համարյա չորանալու վրա էին: Եվ քանի որ տանտերը քաղաքում էր բնակվում և մտքինն էլ վաճառելն էր եղել, ոչ մի ուշադրություն չէր դարձրել ոչ տանը և ոչ էլ պարտեզի ծառերին: Եվ ահա տունը գնելուց հետո եղբորս և իմ հաճելի պարտականությունը դարձավ պարտեզի ծառերը ջրելը: Իսկ դրա մեջ ոչ մի դժվարություն չկար, քանի որ հենց պարտեզի վերևից հոսում էր մի առատաջուր առվակ: Այդպես կանոնավորապես ջրում էինք, և շուտով ծառերը կարծես զվարթացան ու գարնանը կարգին ծաղկեցին: Լավ թութ բռնեց և թթենին, ու հայրս շատ գոհ էր նոր տընից: Թութը լավն էր, բայց հորս կարծիքով՝ մի թթենի ունենալը մեծ պակասություն էր պարտեզի համար: Եվ ահա տան դիմաց ու կողքին տնկեցինք վայրի թթենու տնկիներ, որոնք մի երկու տարի անց պատվաստեցինք: Այսինքն մենք չըպատվաստեցինք, այդպիսի կարևոր գործից մենք ինքներս հազիվ թե գլուխ հանեինք, թեև ձևը գիտեինք: Նախ հայրս ընտրեց պատվաստանյութը, այսինքն այն ծառը, որից պետք է վերցվեր պատվաստը: Իսկ դա կատարեց մեր հին հարևաններից մեկի պապը, որի ձեռքը, ասում էին, և շատ է հմուտ, և շատ է բարի, ոչ մի պատվաստ զուր չէր անցնում:

Եվ ահա մենք սկսեցինք ավելի լավ խնամել այդ պատվաստած թթենիներն ու մի քանի տարի անց արդեն ունեինք թե վաղահաս, թե ուշահաս տեսակներ և թե մատնաթութ, որը աչքի էր ընկնում ոչ միայն իր մեծությամբ, այլև քաղցըր համով: Ասես մեղր լիներ: Հունիս ամսից մինչև սեպտեմբեր թութն անպակաս էր մեր պարտեզից: Իհարկե, սեպտեմբերին եղած թութը խառը թութն էր: Երբ ճերմակ ու դեղին թթերի հետ ավարտվել էր հարցը, հայրս սկսել էր փնտրել, թե որտեղից խառը թութ գտնի: Սա սև թութ էր, բայց ոչ սովորականը, որը մի տեսակ ջրալի էր, շատ քիչ քաղցր և հասնելուն պես ցած էր թափվում: Ոչ, խառը թութը այլ բան էր: Դա նաև Ակնա թութն էր, ահա թե ինչու հայրս այնպես ցանկանում էր պարտեզում այդ թութը ունենալ: Վերջապես գտավ այդպիսի մի պատվաստած թթենի, և, նախապես մյուս թթենիների շարքում փոսը փորելով, մեր պարտեզը փոխադրեցինք: Հիմա հորս սիրտը հանգիստ էր, նաև խառը թութ ունեինք:

Սա իսկական մուրաբայի թութ էր և որքան էլ հասունանար, չէր ընկնի գետին: Ծառի ճյուղին չիր կդառնար ու չէր ընկնի: Հասուն թթերը մկրատով էինք քաղում, սանդուղքի վրա բարձրանալով: Համը հրաշալի էր, և ասում էին՝ սաստիկ օգտակար է և առողջարար: Այո, սա միակ թութն էր, որ քաղում էինք ձեռքով, հատ-հատ, իսկ մյուսները թափ էինք տալիս:

Ամառային արձակուրդին իմ ամենասիրած տեղը թթի մեծ ծառի վրա էր: Բարձրանում էի, հարմարվում մի մեծ ճյուղի, նստում, մեջքս հենում մյուսին ու կարդում էի: Թութ հազվադեպ էի ուտում: Միայն դեղնողն ու չորացողը, որը համարյա չիր էր դառնում և մեկ էլ՝ խառը թութը: Այդ դեղնածը մեղրի համ ուներ: Իսկ թափ տված թութ երբեք չէի ուտում, թեև ինքս էի թափ տվողը: Մի մեծ շոր ունեինք, որը բռնում էին առնվազն վեցից ութ հոգի: Այդպես բռնում էին ներքևում, իսկ ես վերևից թափ էի տալիս: Ընդհանրապես ընդունված էր թակով՝ փայտե մի մեծ մուրճով թափ տալը: Թակով խփում էին ճյուղին, և հասուն թթերը վայր էին թափվում: Ու թեև փայտից էր թակը, սակայն մեկ է՝ ծառի կեղևը վնասում էր: Իսկ ինձ թթի ծառերը շատ սիրելի էին դեռևս մանուկ տարիքից, հորս պատմածների շնորհիվ և այդ պատճառով էլ մի տեսակ շնչավոր էակ էին դարձել: Ահա թե ինչու երբեք թակով թութ չէի թափ տալիս, ինչքան էլ հյուր եկած բարեկամները համոզում էին: Հայրս էլ չէր սիրում թակով թափ տալ: Ես պարզապես շարժում էի ճյուղը և որքան թափվում՝ թափվում էր:

Այդպես թափ էինք տալիս, լցնում մեծ թասի մեջ ու դնում հենց ծառի տակի երկարուկ սեղանին: Երբեք չէր լինի, որ առանց բարեկամների թութ թափ տայինք: Այդպես բոլորը շարվում էին թթի շուրջն, ու վայելում: Իսկ ես ծառին նստած նայում էի ու անասելի հաճույք զգում: Ինչ լավ տարիներ էին. մարդկանց ուրախության համար շատ քիչ բան էր հարկավոր:

Հետո մեծ փորձության ենթարկվեցին արաբկիրյան թթենիները: Սկսեցին կծկըվել ու կռնծվել տերևները, ժամանակից շուտ դեղնել: Մանրացավ ու անհամացավ, ավելի շուտ՝ տհաճ համ ստացավ թութը: Եվ այդ բոլորի պատճառը պլյումինի գործարանն էր ու նրա շատ մեծ ծխնելույզի

դեղին ծուխը, որը միշտ մեր տների կող-մըն էր տարածվում, քամին մեր կողմն էր բերում: Մարդկանց աչքը միշտ այդ ծխին ու կռնծված տերևներով թթենինե-րին էր: Պարզ է, այլ վնասներ էլ էր տա-լիս այդ ծուխը, վնասում նաև մյուս ծա-ռերին, սակայն ամենամեծ զոհը թթենի-ներն էին. մեծ քիմիայի առաջին զոհե-րը: Ասես մի մեծ աղետ էր ներխուժել Ա-րաբկիր, և մարդկանց ամենօրյա խոսակ-ցությունն այդ հսկա ծխնելույզի ու նրա դեղին ծխի շուրջն էր: Երբ էլ նայեիր, դրա ծուխը միշտ մեր կողմն էր գալիս, ասես դիտավորյալ լիներ: Ի՛նչ հորս աչքը միշտ այդ ծխնելույզին էր: Նրա վիշտը մեծ էր, չէր օգնում և Զարուհի տատիս միակ անեծքը.

— Քամբախ էլներ:

Սակայն ի մեծ հիասթափություն մեզ, այդ ծխնելույզը քամբախ չէր լինում, այ-սինքն, չէր ավերվում, ու միշտ դեղին ծու-խըն էլ ելնում նրանից, Եվ դրությունը բնավ էլ չէր փրկվում այն բանից, որ մենք գիտեինք նաև այդ գազի անունը՝ ֆտոր: Դա մեզ ասել էր մեր քիմիայի ուսուցիչ ընկեր Սարգիսը: Գիտենալը՝ գի-տեինք, սակայն ոչնչով օգնել չէինք կա-րող, նման այն բժշկին, որ թեև գիտե, հիվանդի ախտը, սակայն բուժել անկա-րող է:

Եվ ինչ իմանային ինչ-որ տեղ այդ գործարանը նախագծողները, թե մի օր Արաբկիրն են զրկելու թթից: Կամ գի-տե՞ն ինչ բան է թութը: Չէ՞ որ ոչ տես-նում էին թթենիների կծկված ու չորացող տերևները, ոչ էլ՝ մանրացած ու համը կորցրած մանրիկ թութը: Եվ ոչ էլ նրանց էր հասնում արաբկիրցի կանանց անհաս-ցե անեծքները:

Այժմ հայրս ավելի հաճախ էր հիշում Ակնա թութը, հիշում նրա դեղնավուն գույ-նըն ու մեղրի համը: Ու նրան այլևս չէին մխիթարում այլումինի գործարանը կամ այդ թունավոր արտադրությունը փակելու մասին լուրերը: Ծխնելույզը կար, ծուխը ելնում էր, և կծկված, կռնծված էին մնում թթենու տերևները, որոնք նաև մանրացել էին: Այո, ծառերը կանգնած էին մահա-նում և դա կարծես հենց մեր արաբկիր-յան թթենիների մասին ասված լիներ: Հորս վիշտը մեծ էր. Ակնա թթենիները մնացել էին թուրքին, իսկ սրանք էլ զոհ էին գնում մեծ քիմիայի «հաղթարշավին»: Իսկ չէ՞ որ նրա համար թութը լոկ միրգ չէր, առաջին հերթին իր արյունոտված մանկության հուշն էր: Ես դրանում ավելի համոզվեցի, երբ տարիներ հետո՝ 1987 թվականին հեռավոր Բուխարեստից մի նամակ հանձնեցին Գրողների միությու-նից: Հեղինակն ինձ անծանոթ Մադլեն Սելյանն էր: Նա ընթերցել էր «Հայրենիքի ձայնում» իմ մի պատմվածքը, ուր շատ հպանցիկ ասել էի, թե հայրս միշտ հի-շում էր Ակնա թութը: Եվ ահա մեր հեռա-վոր հայրենակցուհին հայտնում էր, որ իր մեծ մայրիկը նույնպես ակնեցի է ե-ղել և իրեն է փոխանցել ծննդավայրի երկնքի, հողի և ջրի կարոտը: Եվ ինձ անվանում էր հայրենակից: Ավելի մեծ պատիվ չեմ էլ երազել երբեք, չէ՞ որ դա հորս ամենասիրած բառն էր, որով պատ-վում էր ծանոթ-անծանոթին, քանի որ նրանք հայ էին:

«Ակնոք չկան այլևս,— գրում էր իմ անծանոթ հայրենակցուհին:

— Բայց մենք, որոնք մնացած ենք Ակնցի անոնց տեղը, պետք է անոնց պես արժանավայել ապրինք, որպեսզի օր մը հասնինք մեր թթենիներու մոտ»:

Այս նամակն ընթերցելուց հետո ահա ավելի պարզ ըմբռնեցի, թե ինչու էր այն-պես վշտացած հայրս այն տարիներին և ինչու այդ վիշտը բազմապատկվեց, երբ նոր շենքեր շինելու առիթով քանդում էին նաև մեր տունն ու այգին: Նրա համար ամենացավալին թթենիների կտրելն էր, որ այնպես արագացնել էր ջանում քաղ-սովետի աշխատակիցը: Վերջապես դա էլ կատարվեց, իսկ հետո մենք նոր բնա-կարան փոխադրվեցինք: Եվ ինձ թվաց՝ հայրս արդեն մոռացել էր թթենիները: Ու մի օր էլ որդիս, որն այդ օրերին երեք տարեկան էլ դեռ չէր եղել, մեկեն լացա-կումեց ու ասաց.

— Ինչո՞ւ մեր թթի ծառերը կտրտեցին: Չէ՞ որ թեև առաջացած տարիքին հայրս մշտապես նրան ձոր էր տանում (որի ճանապարհն արդեն ասֆալտապատ էր) թութ ուտելու: Ու մի օր էլ, երբ կրկին ինչ-որ բանից սրտնեղել էր որդիս, լացա-կումեց ու ասաց տխրաձայն.

— Ինչո՞ւ մեր թթի ծառերը թուրքերին մնաց:

Ու ես վերջապես համոզվեցի, թե այդ թթենիները անվերադարձ մտել են մեր արյան ու գիտակցության մեջ, որ դրանք հիշողության կամուրջ են դարձել մեր ու մեր խլված ծննդավայրի միջև և թութը մեր ընտանիքի համար վաղուց է դադա-րել սոսկական միրգ լինելուց…

ՅՈՎԱՆ ՅՈՎԱՆՈՎԻՉ ԶՄԱՅ




Նկարը՝ ՀՈՎԻԿ ԱՆՏՈՆՅԱՆԻ

Փոթարկահույզ սև գիշերվա մի պահի
Ֆերուզ փաշան քնից ցատկեց շփոթված,
Ջահը շողաց ու կարծես թե փաշայի
Գունատ դեմքից առկախ սարսափը ցոլաց,
Փաշան շրջվեց դեպի կինն իր դեռատի.
«Ո՞ւր են, ասա, բանալիները բանտի:
Արդեն երեք տարի փտում են հողում
Հայդուկների մոխիրներն այդ անիծյալ,
Բայց մինչ այսօր սարսափում եմ ու դողում,
Երազումս էլ չունեմ հանգիստ ու դադար»:
«Պետք չէ, տղա, դու գիշերով իջնես բանտ,
Մենք ծառային վաղը ներքև կուղարկենք,
Որ նա թաղի ոսկորները նրանց ժանտ»:
«Հա, հա, հա, հա, ալ թե կնիկ եմ ասել,
Երբ ողջ էին, կռվում էին դեռ իմ դեմ,
Ես նրանցից վախի նշույլ չունեի,
Էլ ո՞ւր մնաց, փախչեմ սատկած շներից:
Պիտի գնամ, պիտի տեսնեմ ես նրանց,
Տեսնեմ ինչպես են լուռ փտում մեկնված,
Հարցնեմ պիտի՝ ինչո՞ւ են ինձ թախանձում,
Այդ ի՞նչ պարտք ու պահանջ ունեն ինձանից»:
Ջահը վերցրեց, և ստվերը դողդոջուն
Յնցեց գունատ կիսադեմը փաշայի:
Մահագուշակ ժանգոտ կողպեքը ճռռաց,
Ու նա մեխվեց բանտախցում փրփրած:
Ահա բանտում այդ սառցանիստ, ահարկու,
Ուր կարիճներն են խեղդվում բորբոսից,
Ուր սոսկում են օձերն անգամ պաղարյուն,
Երբ հիշում են կտտանքները անհոգի,
Ահա նստած երեք կմախք, երեք դի,
Հայդուկների ոսկորները մահաբույր:

Նստա՞ծ են նրանք, թե՞ լոկ փաշայի
Աչքին է միայն երևում այդպես:
Իսկ նրանց առջև,
Սեղան հիշեցնող մի քարի վրա,
Դրված են երեք ժանգոտած թասեր:
Եվ խոսեց հանկարծ հայդուկն առաջին.
«Ահա քեզ, փաշա, արնածոր մի թաս:
Ես մի շատ սիրուն հարսիկ ունեի,
Երբ ինձ կալանեց խավարուտը այս,
Նա մենակ մնաց, գերված ու անսեր:
Չէ, չէ, մենակ չէր... սուր ուներ ձեռքին,
Եվ բղավում էր. «Ո՞ւր եք, գազաններ»:
Այդպես հայտնվեց նա քո տան շեմքին:
Վերևից հանկարծ հրացան պայթեց՝
Խեղճը վայր ընկավ խոցոտված սրտից,
Ու այս թասի մեջ արյունը թափվեց:
Գավս լիքն է այդ գինով անկաշառ,
Կենացս ըմպիր, ով Ֆերուզ փաշա»:
Փաշայի ձեռքը ասես ակամա վերև է պարզվում,
Ոտքերը նրա ինքնաբերաբար առաջ են վազում:
Ըմպում է գավը ու աղաղակում ահասաստ ցավից,





Ոռնում է փաշան, իսկ կմախքները այն գետնատարած
Ծիծաղում էին. «Թողների Աստված»:
Երկրորդ հայդուկը խոսեց և ասաց.
«Երբ ես այս վիրապն ընկա գահավեժ,
Մայրս քեզ հարցրեց.
«Ի՞նչ փրկագին տամ իմ որդու դիմաց»:
Պատասխանեցիր. «Երեք չափ ոսկի, թե որ կճարես»:
Այնժամ մայրը իմ՝ ծերացած ու խեղճ,
Գիշեր ու ցերեկ լուռ չարչարվելով,
Հաց ու ջրից էլ խսպառ կտրվեց,
Մինչև որ արյուն-քրտինք թափելով
Երեք չափ ոսկի մի օր հավաքեց:
Երբ փրկագինը քեզ մուծեց, այնժամ,
Փաշա, դու, փաշա, ծաղրեցիր նրան.
«Այ պառավ, այդքան չնչին գումարով
Հազիվ քո որդու ուտեստը հոգանք.
Պետք է որ հսկա լիներ նա մի քաջ,
Եթե կարող էր քարեր կրծելով
Գիրանալ այդչափ»:
Մայրս վախճանվեց, չզորեց տոկալ,
Ու գավաթը այս, որ լի է գինով՝
Հենց նրա արյուն-քրտինքն է որ կա:
Գավս լիքն է այդ գինով անկաշառ,
Կենացս ըմպիր, ով Ֆերուզ փաշա»:
Փաշայի ձեռքը ասես ակամա վերև է պարզվում,
Ոտքերը նրա ինքնաբերաբար առաջ են վազում:
Ըմպում է գավը ու աղաղակում ահասաստ ցավից,
Ոռնում է փաշան, իսկ կմախքները այն գետնատարած
Ծիծաղում էին. «Թողների Աստված»:
Երրորդ հայդուկը խոսեց ու ասաց.
«Երբ հայտնվեցի ես այս մութ բանտում,
Իմ որդին, ավաղ, սարերում մնաց,
Որդիս, որ փոքր էր, տակավին մանուկ:
Երեխան ուզեց հրացան բռնել,
Բայց զենքը ծանր էր, ձեռքը թուլացավ,
Ու նա դառնորեն սկսեց ողբալ,
Տեսավ՝ չի կարող քաջաբար կռվել,
Ու տխրեց անչափ:
Սոված ու ծարավ լալիս էր անվերջ,
Որ հայրիկը իր փտում է անհետ,
Լաց ու ողբով էլ իջավ գերեզման.
Գավաթն այս լիքն է արցունքով նրա:
Գավս լիքն է այդ գինով անկաշառ,
Կենացս ըմպիր, ով Ֆերուզ փաշա»:
Փաշայի ձեռքը ասես ակամա վերև է պարզվում,
Ոտքերը նրա ինքնաբերաբար առաջ են վազում:
Գավը դատարկեց ու աղաղակեց ցավից ամեհի,
Շնչահեղձ ընկավ ոտքերի առաջ քաջ հայդուկների,
Հոգին ավանդեց, իսկ ոսկորները այն գետնատարած
Ծիծաղում էին. «Թողների Աստված»:

1866 թ.

Սերբերենից թարգմանեցին ԱԾՈՏ ՀՈՎԱԿԻՄՅԱՆԸ և ԱԾՈՏ ԱԼԵՔՍԱՆՅԱՆԸ



ՎԱՐՈՒԺԱՆ ԽԱՍՏՈՒՐ

# Գիշերային խնջույք

Ինձ ամեն գիշեր դուդուկն է կանչում
Արարատի հետ նստելու քեֆի,
և գիշերային աստղաղողանջում
մորմոք է ցրում մի հին մեղեդի:

Եվ բորբ գինին է հորձանքներ տալիս,
ծեր Արարատն է դառնում թամադա,
ասում է՝ որդիս, ամեն ինչ կանցնի,
սակայն հավատքը հավերժ կմնա:

Հավատքն է խորհուրդն այն մեծահզոր,
որ ոգորում է ճամփան տունդարձի,
այսպես ենք ապրում մենք գիշեր ու զօր
և ոչինչ չունենք նրանից բացի:

Ապա մեկառմեկ, նահապետի պես
գալիս են հայոց լեռները բոլոր,
և թունդ է առնում քեֆը մեր անտես
գինու ժպտացող համբույրից բոսոր:

Եվ ճառեր չկան մեր սեղանի շուրջ,
դուդուկն ամեն ինչ ասում է խորունկ,
ծորում է նրա շուրթերից անուրջ,
և հնչյունները զուլալ են, խորունկ...

Հանկարծ արևն է աչքերը բացում,
ու մոտենում է պահն առավոտի,
լեռները իրենց տեղերն են վազում,
իսկ ես մնում եմ գրկում կարոտի:

Եվ կանգնում եմ ես լուռ ու անկարի,
դիմացս Մասիս սարն է դյութական,
Արաքսը՝ սահման՝ մեղքը աշխարհի,
և լեռնակապույտ մի երազ կիսատ...

Լուսանկարները՝ ՎԻԼՀԵԼՄ ԱԿՈՒՆՑԱՆԻ



ՄԱՆՈՒԿ ՄԱՀՏԵՍՅԱՆ (ԷՄԱՆՈՒԵԼ) 1857—1908 ԹԹ. «ԾՈՎԱՅԻՆ ՏԵՍԱՐԱՆ»:

Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈՒՅԱՆ Լ., ՇԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր):

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ՎԱՐԴԱՆՅԱՆ Ա.:

ԻՆԴԵՔՍ՝ 77806

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ